





# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ՏՈՆԸ

Տասը տարի առաջ էր։

Չեխոսլովակիայի գեղեցիկ մայրաքաղաք Պրագան կարծես ավելի էր գեղեցկացել։ Փողոցներն ու տները զարդարված էին բազմաթիվ երկրների դրոշակներով, գորգերով ու ծաղկաշղթաներով։ Իսկ անցորդները կարծես կառնավալային զգեստներ էին հագել, գույնզգույն ու գեղեցիկ ժապավեններ կապել։ Բայց Պրագայում այդ օրերին կառնավալ չէր, այլ երիտասարդության և ուսուցիչների համաշխարհային փեստիվալը։

Եկել էին աշխարհի բոլոր ծայրերից՝ հեռավոր Ավստրալիայից ու Ինդոնեզիայից, Աֆրիկայի նեգրերն էին եկել ու չինացիները, հնդիկներն ու վյետնամցիները, եկել էին եվրոպական ու ամերիկյան երկրներից։ Ամեն մեկն իր գույնն ուներ ու իր ազգային տարազը։ Եկել էին սպիտակամորթները, սևամորթները և դեղնամորթները։ Նրանք անցնում էին փողոցով ձեռք-ձեռքի տված, հպարտ ու երջանիկ և ցուցադրում էին աշխարհի երիտասարդության համերաշխությունը, նրանց անսասան կամքը խաղաղության, դեմոկրատիայի և առաջադիմության համար մղվող պայքարում։ Նրանք ցույց տվեցին, որ բոլոր ժողովուրդներն էլ իրավահավասար են և կարող են ապրել խաղաղ ու երջանիկ, նրանք կարծես թե ամբողջ մարդկությանն օրինակ էին ցույց տալիս։

Ամեն օր փեստիվալային ստադիոնում, դահլիճներում ու էստրադաներում ելույթներ էին տեղի ունենում։ Հնչում էր ռուսական ու արգենտինական, հայկական ու բիրմայական երաժշտությունը։ Մերթ բեմ էր բարձրանում և իր ժողովրդի ռիթմիկ ու ճկուն պարը պարում մի աղջիկ՝ Լուսոն կղզուց, մերթ փոթորիկի նման սուրում էր բեմում կովկասյան լեռնցին։

Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիան որոշում ընդունեց յուրաքանչյուր երկու տարին մեկ երիտասարդական փեստիվալներ հրավիրել։ Այնուհետև փեստիվալներ տեղի ունեցան Բուդապեշտում, Բեռլինում, Բուխարեստում ու Վարշավայում։

Հետևյալ, 6-րդ փեստիվալը որոշվել է անցկացնել մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, այս տարվա հուլիս-օգոստոս ամիսներին։

Բայց ի՞նչ բան է փեստիվալը։ Փեստիվալ բառը լատինական ծագում ունի և նշանակում է

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

№ 3

ՄԱՐՏ

1957 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 29-ՐԴ ՏԱՐԻ





արվեստի, երաժշտության, թատերական հանդեսների, պարերգային արվեստի տոնակատարություն: Երիտասարդության նման տոնակատարություններ, փեստիվալներ դեռևս շատ վաղուց են անցկացվել, բայց փեստիվալները եղել են փոքր մասշտաբի, նրանք դուրս չեն եկել տվյալ բնակավայրի, գյուղի, քաղաքի կամ երկրի շրջաններից: Պրագայի փեստիվալից առաջ միջազգային փեստիվալներ չէին եղել:

Մինչև համաշխարհային 6-րդ փեստիվալը մեր երկրում անց է կացվում սովետական երիտասարդության համամիութենական փեստիվալ, որին մասնակցելու են բոլոր երիտասարդները: Փեստիվալներ տեղի են ունենում գործարաններում ու փաբրիկաներում, կոլխոզներում ու ՄՏ կայաններում, շրջաններում ու քաղաքներում, մարզերում, երկրամասերում և ռեսպուբլիկաներում: Հայաստանի երիտասարդության փեստիվալը տեղի կունենա այս տարվա մայիսի 25-ին և 26-ին, Երևանում: Մինչ այդ տեղի կունենան երգի տոներ, երիտասարդական պարահանդեսներ ու կառնավալներ, ցերեկույթներ ու համերգներ գրեթե բոլոր վայրերում, և առավել աչքի ընկնող պատանիներն ու աղջիկները կգան ռեսպուբլիկական և այնուհետև համամիութենական փեստիվալ: Ամենուրեք երիտասարդներն ու պատանիները պատրաստվում են փեստիվալին: Կիրովականի № 12 դպրոցը պատրաստում է «Ջարի վերջը» մանկական օպերան, Երևանի երաժշտական ուսումնարանը՝ «Ճուռնն ու կատուն» օպերան: Նոյեմբերյանի շրջանի Ջիթապտղի սովխոզի դպրոցում կազմակերպվել է քառաձայն երգչախումբ, որտեղ ընդգրկված են 58 երեխա:

Փեստիվալին շատ ծաղիկներ ու աղավնիներ են անհրաժեշտ: Երեխաները ծաղիկներ են աճեցնում և աղավնիներ խնամում:

Շուտով, երբ աշխարհի բոլոր ծայրերից երիտասարդության պատվիրակներ կգան Մոսկվա, իրենց 6-րդ փեստիվալին մասնակցելու, նրանց գլխի վերև, մոսկովյան կապույտ երկնքում կճախրեն մեր երեխաների խնամած սպիտակ աղավնիները, և նրանց կրծքերին ու մազերի մեջ կվառվեն երեխաների աճեցրած ծաղիկները: Հարազատ Մոսկվայում տեղի ունեցած փեստիվալը՝ աշխարհի երիտասարդության տոնը, կլինի մինչև հիմա եղածներից ամենից ցնծագինն ու ամենալավը և անջնջելի կմնա նրա մասնակիցների սրտում:



ԱՂԱՎՆԻ

Նկ. ԳՌ. ԽԱՆՋՅԱՆԻ

(Հատված «Շիրակ» վեպի 2-րդ գրքից)

Այսօր առաջին անգամ մեր գոմի երդիկից ներս է ընկել արևի շողքը։ Ուրեմն իսկական գարուն է, որովհետև տատիկն ասում է, որ երբ արևը գոմի երդիկից ներս նայի, ձմեռը էլ ճար ու ճամփա չունի։

Ես արթնանում եմ երեսիս ընկած արևաշողքի դուրեկան տաքությունից։ Սիրտս ինչ-որ անհասկանալի կերպով ուրախ էր։ Ի՞նչ է պատահել... Հա՛, հիշեցի՝ գիշերը եկան կարմիր զինվորները։ Նրանցից մեկին ես Իվան քեռու տեղը դրեցի ու ձեռքից բռնած տարա Ավետ ապոր մոտ։ Բայց պարզվեց, որ Իվանը չէր։ Դրա համար ինձ վրա մի քիչ ծիծաղեցին, իսկ այն մորուքավորը տեսնելով, որ ես շփոթվում եմ, ինձ գրկեց ու գլուխս շոյելով ասաց.

— Բան չկա, աղջիկ ջան, ես քեզ Իվան քեռի...

Այդ խոսքի վրա զինվորներն ավելի ծիծաղեցին, և ես շփոթված փախա, ծվարեցի Գարիկի կողքին, որ քնեմ։

Նրանք դեռ երկար ժամանակ զրուցում էին ու ծիծաղում, այնպես որ ես չիմացա, թե երբ քընեցի։

Իսկ հիմա արթնացել եմ, գոմի օդայից դարձյալ լսվում է զինվորների զրույցն ու բարձր ծիծաղը։ Ուզում եմ գնալ մոտները, բայց վախենում եմ նորից ձեռ առնեն։ Ամենից շատ մորուքավորից եմ ամաչում։ Ախր ինչպե՞ս պատահեց, որ ես նրան շփոթեցի մեր Իվանի հետ։ Չէ՛, նրանց մոտ չեմ գնա, ավելի լավ է Ավետ ապոր մոտ գնամ։ Ավետ ապերն էլ չի երևում. գոմի անկյունում փռված նրա անկողինը չկա։ Ես վազում եմ թոնրատուն ու տեսնում, որ Ավետ ապերը, վրան մի քրքրված վերմակ, պառկած է թոնրատան անկյունում։

— Ավետ ապեր, բա էս ինչպե՞ս եղավ...

Ավետ ապոր մազակալած դեմքը դանդաղ լուսավորվում է և փոքրիկ աչքերը լցվում են մի այնպիսի ծիծաղով, որպիսին ես տեսել եմ միայն այն օրերին, երբ մենք դեռ մեր գյուղում էինք։

— Ի՞նչ է եղել որ,— հարցնում է նա։

— Էնքան ասացիր՝ Իվանը կգա, հա Իվանը կգա, որ էն մորուքավորին Իվանի տեղը դրեցի և խայտառակ եղա։

— Անխելք, եկողներն էլի Իվան են, ասել է թե՝ ռուս։— Հետո նա իր ոսկրոտ ձեռքը հանում է վերմակի տակից ու բռնում իմ թևը.— Բա՛, Արծրվնակ ջան, որ ասում էի, թե կգան, հո սուտ չէ՞ի ասում, գիտեի, չէ՞։ Արի, արի նստի կողքիս, տեսնեմ ինչ ես դարդոտել։

Այդ պահին ներս է մտնում Քյալլախանումը, Նախ մռայլ նայում է մեր կողմը, ապա մի բան մտածելով վերցնում է փայտե դույլերը։

— Խանում ջան, տուր ես գնամ։— Ես տեղից ցատկելով կտրում եմ նրա ճամփան,— տուր, խանում ջան...

— Չէ, ինչի՞ համար։ Դու ապորդ մոտը նստի։ Ես էլ կարող եմ գնալ, ձեռք ու ոտքս՝ չեն քաշվել,— փնթփնթում է նա ու դանթարը դնում ուսին։

— Դու նրան չհասար, համա նա քեզ հասավ,—նրա գնալուց հետո ծիծաղում է Ավետ ապերը։

— Հա, էդպես է,— հաստատում է տատիկս.— աշխարքը սանդուղքի պես բան է, մեկին վեր կտանի, մեկելին՝ վար։

— Ավետ ապեր, իսկ դու ե՞րբ եկար էստեղ պառկեցիր, որ ես չիմացա։

— Եկա, էլի՛։ Խանումիդ սիրտը մեզ հետ տապկընոցի է խաղում։ Հենց որ քո գտած «Իվանին» մորուքը տեսավ, ոտք ու ձեռք ընկած ինձ համեցեք արեց էստեղ։ Քեզ էլ էր ուզում էդ պատվին արժանացնել, բայց դու քնած էիր, վախեցավ թե արթնացնի։

— Քյալլախանումը ինձնից վախեցա՞վ...

— Հա, բա ի՞նչ։ Քեզ փո՞քր մարդ գիտես...

— Ավետ ջան, ազիզ ախպեր,— դռնից ներս ընկնելով ու նրա կողմը վազելով կանչում են Սուրենն ու Սահակը։

Շինելի փեշերը գետին փռելով Սուրենը գրկում է նրան ու հանկարծ ետ քաշվելով ուշադիր նայում է Ավետ ապոր դեմքին։

— Այ ընկեր Կոմիսար, էս ի՞նչ հալի ես... գիշերս ուշ տեղ հասանք։ Մեկ ասի գնամ Ավետի կողմը, մեկ էլ մտածեցի, թե քնած կլինես։ Ջեղավ, ընկեր Կոմիսար, էսպիսի օրով հիվանդանալը բա քեզ կսազի՞։

Նրանք նորից գրկում են իրար, իսկ ես շնչակտուր վազում եմ Նուշիկենց տուն։ Դե որ Սուրենն





ու Սահակը եկել են, ուրեմն Երվանդն էլ է եկել, մտածում եմ ես։

— Նուշի՛կ, Երվանդը եկել է, Արեգը...— կանչում եմ ես, ու լեզուս կապ է ընկնում։ Արեգը օրորոցի առջև չոքած Շողիկին է կերակրում։— Վա՜յ, Արեգ, հարսիկ ջան,— ես կարոտով գրկում եմ նրան։

— Իսկ դու էլ ինչի՞ էիր թաքցնում,— անկյունից դուրս գալով խռոված հարցնում է Նուշիկը։— Բա էդպիսի ընկերությո՞ւն կլինի...

— Ես քեզանից բան չեմ թաքցրել, Նուշ ջան...

— Չես թաքցրել։ Որ գնում էիր քարայրը, Երվանդի մոտ, գիշերն էլ մնում էիր, ինչի՞ չէիր ասում, վախենում էիր ձեռքիցդ խլե՞նք։

— Ախր ես... երազումս էի գնում, Նուշիկ։

— «Երազումս էի գնում»... փչա՜ն,— արհամարհանքով ասում է Նուշիկն ու՛ երեսը շրջում։— Քեզ հետ էլ ընկերություն չեմ անի։

Ես շվարած կանգնել ու չգիտեմ ինչ ասեմ։

— Դե լա՛վ, լա՛վ։ Աշխարհքին խաղաղություն եկավ, հազար տարվա թշնամիներն ախպերացան, հիմի էլ դուք կռվշտոցը գցիք,— ծիծաղում է Անգին մայրիկը։— Ինչ եղավ, եղավ, էսօրվա օրը իրարու թթու խոսք ասելու օր չէ, գեղականի սիրտը վարդ է բացվել։ Ափսոս, մեր խեղճ հալեվորը չմնաց, տեսներ,— հառաչում է նա։— Ճիշտ են ասում, թե երկու երնեկը մի տեղ չի լինի։ Երվանդս իրա զորք ու զենքով եկավ, աշխարհքին հանգստություն բերեց, համա մեր խեղճ Մանուկ քիծեն...

— Ճիշտ է, Անգին մայրիկ, Մանուկ քիծան շատ լավ քիծա էր,— նրան մխիթարում եմ ես։— Մանուշակն էլ լավն էր, Շեկոն էլ...

— Շեկո՞ն ով է,— իսկույն հետաքրքրվում է Նուշիկը։

— Ընկերս է։ Շատ լավ տղա էր։ Թյուրքերը սպանեցին...

— Բա է՞դ ինչի չէիր ասում,— նորից է խռովում նա։— Չէ՛, լավ ընկեր չես։ Արի գնանք տեսնենք ռուսներն ի՛նչ են անում,— հանկարծ առաջարկում է Նուշիկը։— Բոլոր տները լիքը ռուս է։ Ես էդքան շատ ռուս դեռ տեսած չկամ։

Մենք հաշտված ու ուրախ դուրս ենք վազում։

Մեր քնծռոտ, ցեխակոլոլ Ուռուտը մի գիշերվա մեջ այնպես է փոխվել, որ ճանաչել չի լինում։ Ոմանց կտուրներին, ոմանց խոտի դեզերին կամ աթարի ամրոցներին կարմիր դրոշակներ են փողփողում։ Մարդիկ անցուդարձ են անում ուրախերես ու աշխույժ, շատերի կրծքերին կամ գլխարկների վրա նույնպես կարմիր ժապավեններ կան։

Նեղլիկ, ծուռումուռ փողոցներով քայլելը այնքան էլ հեշտ չէ, ձնհալը խանգարում է։ Կտուրներին, պատերի տակ և աղբանոցներում կիտված ձնակույտերը ասես մի արտասովոր ուրախությունից թունդ առած՝ այնպես են հալվում ու առվակներ կապած քչքչում, որ մարդ ուզում է ինքն էլ քչքչալ և այդ առվակների նման վազել, անվերջ վազել։

Մեր կողքից, դույլերի ծանրության տակ տընքալով, քայլում է մի երիտասարդ կին։

— Մորաքույր, էդ ի՞նչ է,— մի բան ասելու համար հարցնում է Նուշիկն ու հորթի նման թռչկոտում։

— Ջուր է, չե՞ս տեսնում։ Առավոտվանից էս էլ երեք ուտք բերում եմ։ Խմում են, շատ են խմում։ Ճամփից են եկել, ծարավել են։

— Ո՞վ, զինվորնե՞րը,— հարցնում եմ ես։

— Հա, բա էլ ո՞վ։ Տանը լիքը ռուս է։

Այդ պահին դիմացի բաց դռնից ելնում է մի զինվոր և շտապ մոտենում ջուր բերող կնոջը։ Նա շարժումներով ինչ-որ բան է ուզում հասկացնել և պատասխանի չսպասելով դույլերը վերցնում է կնոջ ձեռքից։

— Տեսա՞ք, թասիբը չքաշեց,— դառնալով մեզ, բացատրում է կինը։— Չէ՛, շատ լավ տղերք են։ Գիշերվանից իմ անունը Խազաինկա են դրել ու էնպես էլ անուշ են կանչում։

Կնոջ հետ զրուցելով մենք մտնում ենք նրանց տունը։ Սրահում հրացաններ, զինվորական պարկեր ու շինելներ են դարսված։ Զինվորները, որը գլխաբաց, որը միայն ներքնաշապիկով, պպզել են սրահի մեջտեղում փռված շինելի շուրջը։ Մի ավելի տարիքավոր զինվոր սուխարի է բաժանում, Շինելի վրա լցված սև ու փոշոտ սուխարու կույտից նա ամեն անգամ վերցնում է մի քանի կտոր և առանձին-առանձին դնելով ավելի փոքրիկ կույտեր է կազմում։

Գործը վերջացնելով նա մի անգամ էլ է հաշվում կույտերը, ապա ընկերներին նշան է անում, որ վերցնեն իրենց բաժինները։

Մի պահ սրահի բոլոր կողմերից խրթխրթոց է լսվում. զինվորները չոր սուխարիով նախաճաշում են։

— Ամոթ է, գնանք, հաց են ուտում,— շշնջում է Նուշիկը։

— Մի քիչ էլ մնանք, տեսնենք ինչ պիտի անեն,— համառում եմ ես։ Սուխարի բաժանողը նկատելով մեր քչփչոցը, գրպանից հանում է երկու կտոր սուխարի ու մեկնում մեզ։

Մենք հրաժարվում ենք։ Նա մեզ խրախուսելու համար մի կտոր խրթացնում է ու ծիծաղում.

— Хорош!

— Որ չվերցնենք, կնեղանա,— որոշում եմ ես ու ձեռքս մեկնում սուխարուն։ Մեզ հյուրասիրողը ուրախ խփում է իմ ուսին։ Հետո նա գրպանները քրքրելով հանում է մի բուռ՝ծխախոտ։

— Мохорка!— այս ու այն կողմից բացագանչում են զինվորները ու նորից շրջապատում նրան։

*Յուրաքանչյուրը մի պտղունց վերցնելով իսկույն ոչնչացնում են այդ մոխրկան։*

*— Վա՜յ, իրեն բան չմնաց,— հուզված շշնջում է Նուշիկն ու դուրս վազում,— դու էստեղ մնա, ես հիմի կգամ։*

*Քիչ հետո նա վերադառնում է՝ ձեռքին մի փոքրիկ պարկ ղուլլասար թութուն։*

*— Առեք, քեռի, մայրիկս պահել էր հիշատակի համար, հիմի ձեզ է տալիս,— շնչասպառ վրա է տալիս Նուշիկը, պարկը մեկնելով զինվորին,— մայրիկս ասաց՝ թող քաշեն, անուշ լինի...*

— Ануш!*—ծիծաղում է մեր ծանոթը, բացելով պարկը։*

*Ղուլլասարն էլ արդեն սպառված է։ Զինվորները հազալով ու փռշտալով ծխում են անսովոր ծխախոտը, իսկ մենք համարձակություն ստացած խրթացնում ենք չոր սուխարին, որից փոշեհամ է գալիս։*

*— Բա՞, շատ լավ արեցի, որ բերեցի,— ոգևորվում է Նուշիկը։*

*— Հա, լավ արեցիր, տես, ինչպես են փռշտում,— բերանս լիքը սուխարի, հաստատում եմ ես։*

*— Երեխեք, էստեղ եկեք,—թոնրատնից կանչում է չահել տանտիրուհին։— Էս բիշին տարեք, թող բալշևիկի սալդաթներն ուտեն։ Ամոթ է, մի կարգին բան էլ չունենք, թե պատիվ անենք։*

*Ես ու Նուշիկը վերցնում ենք պղնձե սինին, որի վրա բիշիների մի անագին կույտ է դարսված։*

*Մենք հերթով մոտենում ենք զինվորներին։*

*— Բիշի կեր,— յուրաքանչյուրի առջևը կանգնելով ու սինին նրա քթին մոտեցնելով առաջարկում եմ ես։*

*— Կե՛ր, կե՛ր, շատ անուշ է,— խորհուրդ է տալիս Նուշիկը, թուքը կուլ տալով։*

— Ты Ануш?*—հարցնում է մեր ծանոթը բիշին կծելով։*

*— Նուշիկ, սա կարծում է, թե Անուշը դու ես...*

*— Դու եղիր Անուշը, ինձ պետք չի,— չգիտեմ ինչու դժգոհ ասում է Նուշիկը։*

*— Նո՞ւշ... էլի խռովեցի՞ր։*

— Нуш, Ануш! *— այս անգամ միասին ծիծաղում են բոլոր զինվորները։*



## ԾԻՏԻԿԻ ԳԱՆԳԱՏԸ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Երբ գարուն էր, օրը տաք,
Երգում էի թփի տակ,
Երգում էի պարտեզում
Կարոն նստում էր, լսում:
Հիմա ձմեռ է, ձմեռ,
Ձյունն է ծածկել, դաշտ ու լեռ,
Կարոն ինձ մոտ չի գալիս,
Կարոն ինձ կուտ չի տալիս.
Ինքը հագնում է տաքուկ,
Խաղում ձյունի հետ փափուկ:
Երբ գան օրերը գարնան,
Նորից հավքերը դառնան,
Ես կպատմեմ բոլորին,
Որ չսիրեն Կարոյին.
Կասեմ, որ ես չեմ ուզում
Երգենք նրա պարտեզում:



# Սոճին

Գ. ՖԻԼՈՅԱՆ

Նկ. Ա. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Անտառում մի մեծ, շատ մեծ Սոճի կար: Նա անտառի ծառերից ամենաբարձրն էր, այնքան բարձր, որ նրա կատարին ամպերը հանգստանալու էին իջնում: Կատարից մի քիչ ցած, փարթամ ճյուղերի մեջ բույն էր դրել Ագռավը: Դա անտառի ամենածեր Ագռավն էր, և Սոճու հետ նրանք լավ բարեկամներ էին: Իզուր չէր Սոճին իր խիտ ճյուղերով Ագռավի բույնը պաշտպանում քամուց ու անձրևից, և իզուր չէր Ագռավը Սոճուն իր իմացած ամեն բան պատմում: Իսկ նա շատ բան գիտեր: Եվ ինչպե՞ս չիմանար, չէ՞ որ Ագռավը մի ամբողջ դար էր ապրել: Հարյուր տարեկան էր նա և շատ տեղերում էր եղել:

Իսկ Սոճու տակ, ուղիղ նրա բնի մոտ աճում էր մասրենու մի փոքրիկ թուփ: Մասրենին անընդհատ փնթփնթում ու ջղայնանում էր նրա վրա.

— Քո պատճառով, Սոճի, ես երկինքը չեմ տեսնում, արևի ճառագայթները քո փարթամ ճյուղերի պատճառով ինձ չեն կարողանում հասնել, դրա համար էլ իմ ծաղիկները այսպես նվազ են: Ա՜խ, հենց որ դու չլինես, ինչքա՜ն սիրուն կծաղկեմ ես:

— Ի՞նչ հիմար բաներ ես ասում, Մասուր,— պատասխանում էր Սոճին,— ի՞նչպես կարող եմ ես չլինել, երբ իմ արմատներն այնքան խորն են մտել հողի մեջ:

Բայց մի անգամ անտառում տեղի ունեցավ մի բան, որ անտառի բնակիչներից ոչ ոք՝ ո՛չ թռչունները, ո՛չ գազանները և ո՛չ էլ ծառերը, չէին սպասում: Անտառ եկան սղոցներով զինված մարդիկ և սղոցեցին ամենաբարձր Սոճին:

— Շուտ փրկիր քո բույնը, Ագռա՛վ,— ասաց Սոճին, երբ սղոցի ատամները խրվեցին նրա բունը,— մի ուշացնի, շուտ փրկիր ձագերիդ:

Ագռավն իր բույնը փոխադրեց ուրիշ ծառի վրա և նորից թռավ եկավ Սոճու մոտ՝ նրան հրաժեշտ տալու:

— Ասա, Ագռավ, ի՞նչ կանեն ինձ,— սարսափից ճյուղերը դողացնելով հարցրեց Սոճին:

— Մի վախեցիր,— հանգստացնում էր ագռավը,— մի բան պարզ է, որ քեզ վառելիք չեն անի:

— Իսկ ի՞նչ կանեն ինձ:

— Է, քի՞չ բան կարող են անել: Կարող են քեզ շոգենավի կամ ռազմանավի տախտակամած դարձնել, կամ քեզանից ճաշի մեծ սեղան կպատրաստեն, դռներ ու լուսամուտներ կշինեն, կամ...

Բայց Սոճին չկարողացավ Ագռավին մինչև վերջ լսել, նա ճռճվելով ընկավ գետին:

Անտառի բոլոր բնակիչները ափսոսում էին, որ բաժանվում են մեծ Սոճուց: Ինչքան չլինի երկար ժամանակ ապրել էին իրար հետ: Ուրախանում էր միայն մասրենու թուփը: Նրա ցնծությունը սահման չուներ:

— Ինչքա՜ն ուրախ եմ ես, ինքա՜ն երջանիկ, որ Սոճուց ազատվեցի: Ես տեսնում եմ երկինքը, ես ամեն ինչ հիմա տեսնում եմ, արևի շողերը տաքացնում են ինձ, անձրևը կցողի իմ տերևները, իսկ չար Սոճին մինչև այժմ ինձ զրկում էր այս բոլորից:

Իսկ Սոճին այդ ժամանակ լողում էր լայն գետով դեպի ցած: Նրա հետ ուրիշ շատ սոճիներ էին լողում լաստերով և առանձին-առանձին: Նա անցավ շատ քաղաքների և գյուղերի մոտով, օտար անտառների և մարգագետինների մոտով, և նրան այդ բոլորն այնքան էր դուր գալիս, որ նա նույնիսկ այլևս չէր ափսոսում, որ իրեն կտրել են:

— Միշտ նույն տեղում կանգնելով, միթե՞ ես այս բոլորը կտեսնեի,— մտածում էր նա,— մենակ, ափսոս, որ կտրեցին իմ փարթամ ճյուղերը:

Հետո նրան տարան երկաթուղով, բաց վագոնի վրա: Գնացքը հողմի պես սլանում էր քաղաքների ու գյուղերի մոտով և, վերջապես, մի մեծ քաղաք եկան, որտեղ Սոճուն վագոնից իջեցրին և մյուսների հետ դարսեցին կայարանում:

«Տեսնես ումի՞ց կարելի է իմանալ, թե այս քաղաքում ի՞նչ գործարան կա և ինձնից ի՞նչ կշինեն»— մտածեց Սոճին և այդ ժամանակ էլ հանկարծ երկար բեղերով մի ուտիճ տեսավ:

— Ասա, Ուտիճ, դու էստեղացի՞ ես,— դիմեց Սոճին նրան:

— Տեղացի եմ: Ես ծնվել և ծերացել եմ հենց այս քաղաքում,— հպարտ պատասխանեց Ուտիճը:— Ասա, ի՞նչ է հետաքրքրում քեզ. ես գիտեմ ամեն բան, ինչ վերաբերում է այս քաղաքին:

— Ա՛յ, լավ եղա՛վ,— ուրախացավ Սոճին,— ասա, էս քաղաքում ի՛նչ. գործարան կա:

— Հը՛մ, — քմծիծաղ տվեց Ուտիճը, — այստեղ այնքան շատ գործարան ու ֆաբրիկա կա, որ միանգամից չես էլ հիշի:

— Իսկ ի՞նչ ես կարծում, ո՞ր գործարանը ես կընկնեմ, և ինձանից ի՞նչ կշինեն,— հարցրեց Սոճին:

— Դե դու բոլոր գործարաններին պետք չես գա: Ես գիտնական Ուտիճ եմ, լինում եմ լսարաններում, ուր դասախոսություններ են կարդում, նիստերի եմ լինում, որտեղ կարևոր հարցեր են քննարկվում, և ինձ շատ լավ հայտնի է, թե դու որ գործարանը կընկնես:

— Ո՞ր,— անհամբեր հարցրեց Սոճին:

— Դու կընկնես երաժշտական գործիքների գործարանը:

— Իսկ ի՞նչ կշինեն ինձանից:

— Ինձ թվում է, թե քեզանից դաշնամուր կպատրաստեն:

— Ափսոս,— ընկճված ասաց Սոճին,— ուրեմն ես ոչ շեգենավի մաս կդառնամ, ոչ՝ պահարան և ոչ էլ՝ սեղան...

— Ի՛նչ հիմարն ես դու,— ընդհատեց նրան Ուտիճը, — մի՞թե ավելի լավ չէ դաշնամուր լինել: Իսկ դու գիտե՞ս, թե ինչ բան է դաշնամուրը:

— Որտեղի՞ց իմանամ: Ախր, ես անտառից եմ եկել և ինչ որ գիտեմ, լսել եմ ագռավից, իսկ նա ինձ այդ մասին ոչինչ չի ասել:

— Իսկ ինչպե՞ս ես դու ափսոսում դաշնամուր դառնալու համար: Չէ՞ որ դաշնամուրը...

Բայց այդ ժամանակ, չգիտես որտեղից, հայտընվեց մի աքլոր և գիտուն Ուտիճին կուլ տվեց:

— Այդ ի՞նչ արեցիր դու,— սարսափած ասաց Սոճին,— ախր, նա ինձ չասաց, թե ինչ բան է դաշնամուրը:

Իսկ աքլորը անտարբեր թռավ ցանկապատի վրա և այնտեղ սկսեց բարձր կանչել, կարծես դրանով ուզում էր բոլորին հայտնել, որ հենց հիմա նա մի գիտնական Ուտիճ կուլ տվեց:

Եվ հենց այդպես էլ եղավ, ինչպես ասում էր Ուտիճը:

Սոճին ընկավ երաժշտական գործիքների գործարանը և նրանից դաշնամուր պատրաստեցին: Ներսում մետաղից լարեր քաշեցին, թաղիքե մուրճիկներ հարմարեցրին և սև ու սպիտակ ստեղներ դրեցին:

Երբ դաշնամուրը պատրաստ էր, մատներով դիպան նրա ստեղներին, և թաղիքե մուրճիկները հարվածեցին մետաղե լարերին, որոնք քաղցր հընչյուններ արձակեցին: Սոճին ուրախությունից սարսուռ զգաց:

— Ա՛յ թե ես ինչպիսին դարձա:

Հետո դաշնամուրը գործարանից տեղափոխեցին խանութ, որտեղից անմիջապես գնեցին և այն տուն տանելով, դրեցին մի հարմարավետ հյուրասենյակում, որտեղ ուրիշ շատ կարասիներ կային՝ բազմոց, սեղան, գրքի պահարաններ: Նրանք բոլորն էլ դաշնամուրին պատմեցին, որ իրենք էլ ժամանակին ծառեր են եղել և ապրել են անտառում:

Երեկոյան շատ հյուրեր եկան: Նրանք բոլորն էլ գովում էին դաշնամուրը, իսկ երբ սկսեցին նվագել, Սոճուն թվաց, թե նա նորից իր հարազատ անտառում է: Ահա նա լսում է հարևան ծառերի տերևների սոսափյունը, ահա երգեց սոխակը, որը երբեմն նստում էր նրա կանաչ ճյուղերին: Հանկարծ անտառն անհայտացավ և Սոճին լսեց այն գետի ալիքների ճողփյունը, որով նա լողացել էր ուրիշ ծառերի հետ:

— Ինչ լա՛վ է, որ ես դաշնամուր դարձա,— ուրախանում էր Սոճին:

Մի անգամ առավոտյան, երբ մաքրում էին հյուրասենյակը, դաշնամուրի վրա մի հոտավետ ծաղիկներով ծաղկաման դրեցին: Հանկարծ դաշնամուրը հարազատ ու ծանոթ բուրմունք զգաց:

— Մասո՛ւր,— բացագանչեց նա:

Այո, դա այն Մասրենին էր, որ աճում էր մեր Սոճու տակ:

— Մի՞թե դու ինձ չես ճանաչում:

— Որտեղի՞ց պիտի ճանաչեմ, — տխուր ասաց Մասրենու ծաղիկը,— ինձ քաղել են մի հեռավոր անտառում և օդանավով բերել այստեղ:

— Ախր ես այն Սոճին եմ, որի մոտ աճում էիր դու, հիշո՞ւմ ես:

— Ա՛յ թե դու ինչպիսին ես դարձել,— ասաց Մասրի ծաղիկը,— իսկ ես քեզ չճանաչեցի:

Ինչ լավ է, որ մենք նորից միասին ենք:









# Զնգում

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ

Դրսում մութ է, քամի։ Լուսամուտների ապակիները ծածկված են սառցի բյուրեղիկների քմահաճ նախշերով։ Ինչ-որ մի գրավիչ բան կա այդ նախշերում. նրանք ոչնչի նման չեն, բայց միշտ էլ մի որևէ բան են հիշեցնում, միշտ էլ մի նոր բան, և երբ Վահրամիկը մեկ անգամ նայում է այդ նախշերին, այլևս դժվարանում է հայացքն հեռացնել դրանցից. նրա աչքին պատկերանում է մերթ եղևնու անտառ, մերթ՝ լեռներ և, էլ ինչե՞ր ասես, որ չի պատկերանում։ Սառցապատ ապակիների միջից Վահրամիկը դրսում ոչինչ չի տեսնում։

Թիթեղյա վառարանի մեջ կայտառ պարում է կրակը։ Վահրամիկը ծույլ-ծույլ գնում նստում է փոքրիկ աթոռին, կռանում վառարանի առջև և, դուրեկան ջերմությունից կարմրած դեմքը լայն օդանցքներին մոտեցրած, նայում է ճարճատյունով փլչող շիկացած փայտերին։ Զանձրալի է։ Եվ ձանձրույթից Վահրամիկի աչքերը խամրել են։

Հարևան սենյակից լսվում է հայրիկի մահճակալի ճռռոցը։ Վահրամիկը արագ ոտքի է ելնում, թաթերի վրա քայլելով մոտենում է ննջարանի դռանը, ականջ է դնում։ Լսվում է հայրիկի չոր հազը, մահճակալը նորից ճռռում է, ապա ամեն ինչ կրկին խաղաղվում։ Միայն հայրիկի ծանր ու չափավոր շնչառության ձայնն է գալիս կիսաբաց դռան արանքից։ Տղան հանգիստ շունչ է առնում։ Բայց ոչ, մի ձայն էլ է լսվում, այդ դրսում մոլեգնող քամին է սուլում էլեկտրալարերի արանքում։ Զարմանալի է, որ նա միայն նոր է՛ լսում այդ ձայնը, այնինչ քամին վաղուց է սուլում։

Վահրամիկը ցանկանում է կրկին մոտենալ վառարանին։ Պատշգամբից ոտնաձայներ են լսվում։ Նա արագորեն նստում է սեղանի մոտի աթոռին և, գլուխը ձեռքերի մեջ առնելով, նայում է իր առջև բացված գրքին։ Բացվում է հարևան բնակարանի դուռը, ծածկվում, դրսից լսվող ոտնաձայները մարում են։ Տղան ոտքի է ելնում և զարմանում, թե ինչպես խաբվեց։ Չէ՞ որ դեռ երկու րոպե էլ չկա, ինչ մայրիկը գնացել է և նա չի կարող այսքան շուտ վերադառնալ։ Բիչ առաջ մայրիկն ասաց. «Վահրամիկ, վերցրու դեղատոմսը և գնա դեղատուն՝ հայրիկի համար դեղ բերելու»։ Բայց ինքը դեմքը ծռմռեց տհաճորեն, ինչպես խինին ընդունելիս, լեզվի ծայրը հպելով վերին ատամներին, ծպացրեց՝ ծը... այսինքն, «Տրամադրություն չունեմ» և մոտենալով իր փոքրիկ պահարանին, վերցրեց գրքերի պայուսակը։ Իսկ այդ նշանակում էր՝ «Դե, մայրիկ, ես դասերս եմ պատրաստելու, ինձ չխանգարես, խնդրում եմ...»։ Եվ մայրիկը հասկացավ ու չխանգարեց։ Նա առանց մի խոսք ասելու հագավ վերարկուն, կրկնակոշիկները, դրեց մորթե գլխարկը, վերցրեց դեղատոմսը և ննջարանի կողմը ցույց տալով, ասաց. «Ուշադիր եղիր» և դուրս գնաց։

Վահրամիկը, որ արդեն գրքերն առջևը դարսած ցույց էր տալիս, թե կարդում է, դուռը ծածկելուն պես վեր ելավ տեղից և գնաց դեպի վառարանը։ Բայց նախքան այդ, ուզեց մի անգամ փողոց նայել։ Նա մոտեցավ լուսամուտին և լուսամուտի առջև կանգնած, ցուցամատը քսեց ապակուն։ Ցուցամատը սառեց. նա սկսեց միջնամատով շփել ապակին։ Մի քանի անգամ մատը փոխեց, մի քանի անգամ պաղած մատը տաքացնելու համար տարավ բերանը, մինչև որ ապակու վրա սառույցից ազատվեց իր աչքի մեծության մի տարածություն՝ սկզբում՝ ծվածև, իսկ հետո՝ կլոր։ Հետո դեմքը մոտեցրեց դիտանցքին։ Ձյան փաթիլները փողոցի լապտերների և լուսամուտից թափանցող լույսի տակ առկայծելով պարում են,



ետ ու առաջ, վեր ու վար ցատկում։ Աննկատելիորեն զարնվելով լուսամուտի ապակիներին, ձյան փաթիլները խշշում են։ Վահրամիկին թվում է, թե մեկը լուսամուտի այն կողմում թուղթ է ճմրթում։ Նա հայացքով մայթի վրա փնտրում է այն տեղը, ուր այսօր ցերեկը իրենց բակի երեխաների հետ նա սահում էր։ Բայց այդ տեղը չի երևում. ամբողջ մայթը, ամբողջ փողոցը ծածկըված է ձյան հաստ շերտով։

Վահրամիկն անհանգիստ շարժում է անում և դեմքն ավելի է մոտեցնում դիտանցքին, այնպես, որ նրա քթի ծայրը հպվում է սառն ապակուն։ Մի անցորդ հասնելով նրանց լուսամուտների տակ, սայթաքում է և հավասարակշռությունը պահելու համար ձեռքերով ու ոտքերով օդի մեջ այնպիսի ծիծաղելի շարժումներ է անում, որ մորթե գըլխարկը նրա գլխից թռչում է մի կողմ։ Վահրամիկը հազիվ է զսպում իրեն, որպեսզի բարձրաձայն չփռթկա։ Մարդը վերցնում է գլխարկը, թափ տալիս և քայլելով երբեմն խեթ-խեթ ետ է նայում իր կանգնած տեղին ու գլուխն օրորում բացասաբար։ Զվարճալի էր... Վահրամիկն անհամբեր սպասում է, որ նոր անցորդներ անցնեն այդ տեղով։ Հանկարծ նա վեր է ցատկում, այս անգամ նրա քթի ծայրը ճակատի ու երկու ձեռքերի հետ միասին ավելի ամուր են հպվում սառն ապակուն։ Մի պառավ կին էլ է սայթաքում ու վայր ընկնում և չի կարողանում բարձրանալ։ Վահրամիկը նրան օգնության հասնելու մտքով մի ակնթարթ պոկվում է լուսամուտից, բայց ուշ է։ Մի երիտասարդ բարձրացնում է պառավ կնոջը, թևը բռնած թափ տալիս նրա վերարկուի վրայի ձյունը։ Երբ երիտասարդը պառավ կնոջ թևը բռնած թեքվում է հարևան փողոցը, Վահրամիկը ուրախանում է, որ պառավ կինը չի կաղում... Իսկ եթե իսկապես նրա ոտքը կոտրվեր... Վահրամիկը չի կարողանում այլևս լուսամուտի առջև կանգնած մնալ. նա... ուղղակի վախենում է. հեռանում է լուսամուտից, մոտենում է վառարանին, նստում ցածրիկ աթոռակին։ Վառարանի բվվոցը նկատելիորեն թուլացել է։ Վահրամիկը, ձեռքը ծնկների արանքում սեղմած, օղանցքներից նայում է կրակին։ Սակայն նա չի կարողանում տարվել կրակով, նրա մտքերն այնտեղ են, դուրսը, լուսամուտի տակ, ուր սահարանն է։ Նրա աչքից չի հեռանում գետին ընկած անօգնական պառավի պատկերը։ Մայրիկը քանի անգամ է ասել, որ մայթի վրա սահել չի կարելի։ Վահրամիկը չի կարողանում որոշել, թե ինչու ինքը չէր լսում նրան։ Դրանում ոչ մի վատ բան չէ՞ր տեսնում։ Ոչ, ինքը շատ լավ գիտակցում էր, թե ինչու չի կարելի մայթի վրա սահել։ Եվ ահա մարդիկ չեն կարող անվտանգ քայլել փողոցով, իսկ ինքը չի կարող հանգիստ խղճով նստել։ Միշտ էլ այդպես է լինում։ Ա՛յ, թեկուզ, քիչ առաջ, ինչո՞ւ ինքը լսեց մայրիկին, չգնաց դեղ բերելու... Այդ դժվար չէր, բայց ինքն ավելի հաճելի գտավ տաքուկ տանը նստած մնալը, քան թե այս ձյունին ու քամուն փողոց դուրս գալը... Ինքը ուղղակի չցանկացավ։ Իսկ մայրիկը չծուլացավ, չվախեցավ և գնաց... Հիմա նա երևի քայլում է փողոցում, նրա ոտքերի տակ ճռռում է ձյունը, և նա մրսելու մասին չի մտածում, նրան ձանձրալի չի թվում, որ տուն գնալուց հետո պիտի հանի վերարկուն, կրկնակոշիկները... Եվ Վահրամիկին շատ, շատ սիրելի է թվում մայրիկը. նա ամաչում է։

Ա՛յ, բոլորովին ուրիշ բան, եթե հայրիկը հիմա այստեղ լիներ և ասեր. «Վահրամիկ, վերցրու դեղատոմսը և գնա...»։ Նա ուրախությամբ կգնար։ Բայց այդ մասին մտածելն անգամ անտեղի է։ Մի պահ նրա մտքով անցնում է հագնել վերարկուն և վազել դեղատան կողմը, մայրիկին ընդառաջ... Բայց ի՞նչ պատճառ բռնել, որ մայրիկը չզարմանա ու ոչինչ չկռահի. չէ՞ որ այդ տարօրինակ կթվար նրան։ Աչքերը լայն բանալով, Վահրամիկը հանկարծ մատը տանում է ճակատին։ Նա զգուշորեն մոտենում է ննջարանի դռանը, ականջ դնում։ Ոչ մի ձայն չլսելով, գնում է պատշգամբ։

Ձնախառն քամին այնպես է հարվածում նրա դեմքին, որ կարծես նրա դուրս գալուն էր սպասում։ Վահրամիկն իսկույն փշաքաղվում է ամբողջ մարմնով և, ձեռքերով աչքերը ձյունից պաշտպանելով, կանգնում է պատշգամբի մեջտեղում։ Շուտով նրա ձեռքերը մրսում են։ Նա ձեռքերը հեռացնելով աչքերից, խրում է շալվարի գրպանները, սակայն ձյունը հալվում է նրա անպաշտպան դեմքին։ Պաշտպանվելու համար նա կռացնում է գլուխը։ Ձյունը բավական հաստ շերտով նստել է նրա գլխին, ուսերին, կրծքին և նա զգում է ձյան սառնությունը։ Վահրամիկը սենյակ վազելու և վառարանի մոտ տաքանալու խիստ ցանկություն է զգում և, այս մտքից նրա մարմինը սրթսրթում է։ «Ո՛չ, սենյակ չեմ գնա...»,— վճռում է Վահրամիկը։ Նա այսպես կկանգնի թեկուզ մինչև լուսաբաց, միայն թե... միայն թե մայրիկը չիմանա...

Անցել է բավական ժամանակ. թե որքան՝ Վահրամիկն անկարող է ասել, բայց նրան թվում է շատ երկար։ Նա լարում է բոլոր ուժերը, որպեսզի շարունակի կանգնած մնալ և այդ լարումից սեղմվում են նրա ատամներն ու բռունցքները, լարվում են բոլոր մկանները։ Ոտքերը սառչում են, ասես սառցաջրի մեջ դրած լինեն... սառցաջրի մեջ... այս մտքից Վահրամիկը կրկին սրթսրթում է ամբողջ մարմնով և հիշում տաք վառարանը... Այլևս անկարող է զսպել ամբողջ մարմինը ցնցող դողը։ Նա որոշում է ուշադրություն չդարձնել ձնախառն քամու վրա, չմտածել ցրտի ու տաք

վառարանի մասին, փորձում է այլ բաների մասին մտածել և, ինքն էլ չիմանալով, թե ինչու, կրկին հիշում է մայթի վրայի սահարանը, գետին ընկած պառավ կնոջը... Հիմա տեսնես ուրիշներն է՞լ սայթաքել են այնտեղ... Հնարավոր է, որ այո, չէ՞ որ դեռ այնքան էլ ուշ չի, և փողոցում բավական անցորդներ կան, հենց մայրիկը... Վահրամիկը ավելի ամուր է սեղմում բռունցքները, ինքն էլ չիմանալով, թե ինչու, իրեն ցավ պատճառելու համա՞ր, թե՞ այդ միտքը կամ մտապատկերը բռունցքների մեջ ճզմելու համար... Ջրունը շարունակում է տեղալ, քամին շարունակում է իր գիժ պարը։ Սակայն ցուրտն ու քամին այլևս զգալի չեն։

Ցածից ոտնաձայներ լսվեցին։ Վահրամիկը ճանաչում է մայրիկի ոտնաձայնը։ Նա արագ թափ տվեց վրայի ծյունը ու մտավ սենյակ։ Սենյակի դուռը բացվեց, և նա նախ տեսավ մայրիկի դարչնագույն վերարկուն, որից այնպես ուրախացավ և այնպես լայն բացեց աչքերը, որ սրանք արցունքոտվեցին, հետո, երբ մայրիկը դուռը ծածկելով դեմքով դարձավ իրեն, Վահրամիկին թվաց, որ մայրիկը դրսից գալով, իր հետ բերեց մի թարմաշունչ ջերմություն, որից այնպես կարմրել էին նրա այտերը և այնպես առույգ էին շարժումները։ Հեղուկով լի սրվակը դնելով սեղանին, մայրիկը նշանացի ցույց տվեց ննջարանի դռան կողմը և շշուկով հարցրեց. «Ինչպե՞ս է, հայրիկը հանգի՞ստ է»։ Վահրամիկը պատասխանեց գլխի շարժումով և դարձրեց երեսը... Թող մայրիկը ոչինչ չնկատի... Բայց նա նկատեց. «Այս ի՞նչ է, դու դրսո՞ւմ ես եղել, շորերդ ամբողջովին թաց են»,— անհանգստությամբ հարցրեց նա, վերարկուն հանելով։ Վահրամիկը կրկին պատասխանեց միայն գլխի շարժումով և, որպեսզի մայրիկը այլևս հարց չտա, նստելով սեղանի մոտ դրված աթոռին, գլուխն առավ երկու ձեռքերի մեջ և խոնարհեց գրքի վրա... Մայրիկը գնաց նոր վերնաշապիկ բերելու, որպեսզի տղան փոխի հագինը, իսկ Վահրամիկը զգում էր, որ այս անգամ ինքն իրեն չի նախատի մայրիկին խաբելու համար...

Այդ ամբողջ երեկոյան Վահրամիկը տխուր էր։

Վահրամիկը տխուր էր և այն ժամանակ, երբ պառկել էր անկողնում։ Մայրիկը, ինչպես ամեն երեկո, եկավ նրան բարի գիշեր ասելու։ Սովորաբար, Վահրամիկը համբուրելով մայրիկին, շրջվում էր դեպի պատը ու աչքերը փակում։ Սակայն այս անգամ նա գրկեց մայրիկի պարանոցը և համբուրելուց հետո բաց չթողեց. «Մայրի՜կ...», —Վահրամիկը մի պահ վարանեց՝ «Մայրի՜կ...մայրիկ, դու ինչո՞ւ ինձ չտիպեցիր, որ ես գնայի հայրիկի դեղը բերելու, հը՞, ինչո՞ւ, մայրիկ...»։ «Իսկ մի՞թե ես քեզ չասացի»,—մայրիկը կրկին համբուրեց Վահրամիկի ճակատը, և Վահրամիկն ավելի ամուր սեղմեց նրա պարանոցը։ Այո՛, այո՛, մայրիկն այն ժամանակ ասաց...Վահրամիկն զգաց, որ ինքն այն չասաց, ինչ կցանկանար ասել... «մայրի՜կ...»։ Եվ արցունքները գլորվում էին Վահրամիկի աչքերից, թրջում նրա ու մայրիկի դեմքը։ Մայրիկը բարձրացրեց գլուխը, նայեց նրան մի պահ ուշադիր և կրկին համբուրեց ու ասաց. «Քնի՛ր, բալիկս, քնիր հանգիստ...Բարի գիշեր, սիրելիս...»։ «Բարի գիշեր, մայրիկ»,—ասաց Վահրամիկը։ Եվ մայրիկը ոչինչ չհարցրեց, ոչի՛նչ։

Վահրամիկը շրջվեց դեպի պատը և աչքերը փակեց։



# ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

*Անցնում են տարիներ: Եվ քանի հեռանում է Չարենցը, այնքան նա մեծանում է: Իսկ ինչո՞ւ է նա մեծ: Այդ հարցին նա պատասխան է տվել իր բանաստեղծություններից մեկում.*

Թե ուզում ես երգդ լսեն,
ժամանակիդ շունչը դարձիր.
Զուլվիր նյարդով յուրաքանչյուր
Քո օրերին ու քո դարին...



*Այո՛, Չարենցը անմահ է, որովհետև կարողացավ կապվել իր մեծ ժամանակին, երգեց մեծ Հոկտեմբերը, որը կյանք և խաղաղություն բերեց ժողովուրդներին:*

*Չարենցը սովորեց իր նախորդներից, բայց չկրկնեց նրանց, այլ բանաստեղծության մեջ սեփական խոսք ասաց: Դա Հոկտեմբերի բանաստեղծի խոսքն էր՝ ասված աշխարհին, որն ավետում է ժողովրդի պայծառ բախտի մասին: Չարենցը երգում էր հեղափոխության մեծ հանճարին՝ Լենինին, որը մեր երկրի ամենածանր օրերին, ժամանակ էր գտնում մտածելու հասարակ մարդկանց մասին, երգում էր թյուրք բանվոր Ալուն, որի համար Լենինի մահը ամենածանր կորուստն է աշխարհում:*

*Չարենցը երգում էր մեր պայծառ սոցիալիստական առօրյան, երգեց նաև կոմունիստական շքեղ գալիքը «Դանգրահեր տղայում»:*

*Չարենցը ջերմ հայրենասեր էր: Ինչքան խորն էր նա սիրում ժողովրդին, այնքան էլ ատելությամբ էր լցված դեպի նրա թշնամիները: Ո՞վ չի կարդացել կամ անգիր արտասանել նրա «Ես իմ անուշ Հայաստանի» բանաստեղծությունը, հայրենասիրական հոյակապ գործերը...*

*Չարենցը գրել է վեպ, պոեմներ, բալլադներ, չափածո նովելներ, քառյակներ, սոնետներ և այլն: Շատերը գիտեն «Ամբոխները խելագարված», «Ամենապոեմ», «Լենինն ու Ալին», «Երգ ժողովրդի մասին», «Խմբապետ Շավարշը», «Իմ ընկեր Լիպոն», «Երկիր Նաիրի» և այլ գործերը: Դրանց մեջ կա մարտական թափ, խոր զգացմունք: Այդ գործերը ժողովրդի կյանքի հիմնն են, նոր օրերի հիմնը:*

*Չարենցը կոմունիստների պարտիայի զինվորն էր, նրա անձնվեր երգիչը: Նա ապրեց քառասուն տարի, բայց շատ առատաբեր եղավ այդ կյանքը... Ժողովուրդը նշում է իր սիրելի գրողի ծննդյան վաթսուն տարին:*

ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ

# Ճամփորդներ

Փակում եմ հոգնած աչքերս մի պահ
Եվ տեսնում եմ ես այնքա՜ն, այնքա՜ն պարզ.—
Գալիք մի գարուն, վառ մի օր ահա՜,
Երկինքը կապույտ, օրը հրավառ։
Արևը արդեն բարձրացել է քիչ,
Զնգում է օրը ինչպես երգեհոն—
Ու կապո՜ւյտ, կապո՜ւյտ, կապո՜ւյտ երկնքից
Թափում է կարծես երգ ու խնդություն։—
Ոլորապտույտ ձգվում է շոսսեն
Նոր Երևանից դեպի Արարատ։
Ինչքա՜ն են արդյոք տարիներ հոսել
Մինչև գարնային այս օրը զվարթ։
Շոսսեի երկու կողմերում ահա
Տներ, փողոցներ ու գործարաններ,
Կանաչ պարտեզներ, ծաղիկներ առատ,—
Այդ ո՞վ է արդյոք այսքանը ցանել։
Ընկած են տներն իրարից հեռու,
Գործարանները մեջընդմեջ կեցած,
Ո՛չ ծուխ, ո՛չ փոշի.—և լույս տներում—
Ժիր մարդիկ ահա՝ դեմքերին ծիծաղ։—

Ելած արթնացող քաղաքից ահա
Ոլորապտույտ շոսսեով այդ լայն,
Առջևում կարմիր մի դրոշ պահած՝
Անցնում է վաշտը պիոներական։
Հնչում է նրանց դոփյունը հաստատ,
Թմբուկն է թնդում ռիթմով կորովի,
Անցնում են նրանք քայլերով վստահ,
Աչքերով հստակ, դեմքերով թովիչ։—
Քայլում են նրանք շոսսեով, հետո
Կտրելով այդ լայն, ասֆալտե շոսսեն՝
Անցնում են ահա այն ձորի մոտով,
Ուր աղմկահայն Զանգուն է հոսում։
Զանգուն է հոսում ներքևում զվարթ,
Հստակ ջրերով անվերջ կարկաչում,
Իսկ այնտեղ ահա—մի հին ցանկապատ
Ու քարեր՝ ընկած կանաչի միջում։—
Քարեր, հի՛ն քարեր, վաղուց մոռացված,
Անանուն, անգիր, ննջում են այնտեղ,
Ուր լռությունն է իշխում անհաստատ,
Ու հուշն է թռչում՝ հավիտյան անթև։
Ժպտում է վերից երկինքը կապույտ,
Արևն է զնգում անհուն զնգոցով,
Եվ վաշտն է անցնում քայլերով անփույթ,
Արբած արևի կենսատու բոցով։
Հնչում է նրանց դոփյունը հաստատ,
Թմբուկն է թնդում աշխուժով մի ժիր,
Եվ մանուկների աչքերում նստած՝
Գարունն է ժպտում արևի ուժին։—
Անցնում են նրանք ծիծաղով հնչուն
Այդ անխոս, այդ հին քարերի մոտով,
Նրանց ծիծաղում կյանքն է կարկաչում,
Գարո՜ւնն է կանչում անափ կարոտով։

Անցնում են նրանք։— Ու նրանց երթից,
Աչքերը հառած քարերին խաղաղ՝



# Պղան

Հանկարծ բաժանվում ու մոտ է գալիս
Մի կապուտաչյա, գանգրահեր տղա.—
Պիոներական փողկապը վզին,
Ոտները մինչև ծունկները բոբիկ,
Ճակատը բարձր, աչքերը լուսե,
Հագին սպիտակ, կապտերիզ շապիկ,—
Նայում է նա ջինջ, պայծառ աչքերով
Գերեզմանատան քարերին մի պահ,
Հետո կարծրացած փոշին է քերում
Նա մի հին քարի վրայից անահ.
Նայում է ապա նա փոշոտ քարին
Աղեղանման հոնքերի տակով...
Գրված է վրան.— «ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑ,
Բանաստեղծ, ծնված Մակու քաղաքում».
Կարդում է նա իր աչքերով ծավի,
Ժպտում է, հիշում կարծես ինչ-որ բան,
Քաղում է ապա մի կանաչ բաղեղ—
Ու շարունակում իր թողած ճամփան.
Ծիծաղով հնչուն ու արծաթաձայն
Միանում է նա կրկին շարքերին —
Եվ, հուշի նման հավիտյան անցած,
Մնում է հանդում մի կորած շիրիմ...

. . . . . . . . . . . . . . . .

Լսու՞մ ես, այստեղ իմ սիրտն է թաղած,—
Կոխոտի՛ր նրան քայլերով քո լույս,
Օ, դո՛ւ գալիքի գանգրահե՛ր տղա,
Մեր լա՛վ գալիքի ոսկեհե՛ր մանուկ...


Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## ԸՆԿԵՐՆԵՐԸ

ԸՍՏ Ս. ԵՍԵՆԻՆԻ

Նրանք փոքրիկ էին՝ երեխան ու կատուն,
Մեկտեղ խաղում էին տախտակների վրա,
Մինչև մութը իջներ, մինչև հայրը գար տուն
Ու հողագույն հացով կերակրեր նրանց.

Հայրը բանվոր էր. Միշտ, առավոտվա ծեգին,
Նա գործարան կերթար ու ետ կգար մութին.
Հաց կբերեր իրա երեխային մի քիչ,
Երեխան էլ կտար՝ կեսը կատուն ուտի.

Էսպես ապրում էին. Հայրը նրանց մեկ-մեկ
Բան կպատմեր դրսի, հարուստների մասին,
Որ կուշտ են միշտ նրանք, բայց չեն հոգնում
երբեք,—
Եվ մարսելյեզ կերգեր, որ երեխան լսի.

Ու կպատմեր, որ միշտ ինքը հոգնի պիտի,
Պիտի արյուն թքե, որ չոր փշրանք գա տուն.
Ու լռություն դարձած՝ իրիկնային մութին
Կլսեին նրան երեխան ու կատուն...

Բայց մի օր—մի օր կարմիր՝
Գործարան չգնաց էլ հայրը.
Աչքերում վճիռ կար մի,
Ժպիտը հաստատ ու անծայր էր.

Փողոցում մարդիկ, մարդիկ,
Դրոշներ ալվրլան, կարծես տոն էր...
Ու նման էր մայիսյան վարդի
Օրերում այդ—նոր խնդությունը.

Եվ մի օր համբուրեց զավակին
Բանվոր հայրը՝ ձեռքին հրացան.
Համբուրեց աչքերը կատվի
Ու գնաց անձայն...

Բայց դարձավ դռնից բանվոր հայրը,
Համբուրեց նրանց վերստին.
—«Հասկանո՞ւմ եք,— ասավ,—ժամանակն է՝
Զարկելու ենք էսօր հարստին»։

Ու ելավ։ Փողոցում կրակոց էր։
Փողոցում չոքեց բանվոր հայրը։
Զորքերով լեցուն էր փողոցը,
Փողոցում կռիվ ու պայքար էր։

Զարկեցին... ճչաց բանվոր հայրը.
Հարվածը կրծքին էր, հատու։
Բայց հառաչը խոր ու անծայր այն
Լսեցին երեխան ու կատուն...

Վազեց, վազեց փողոց փոքրիկ երեխան.
Կատուն վազեց հետքից իր ընկերոջ փոքրիկ,
Նրանց գլխին կարկուտ, կարմիր գնդակ տեղաց,
Եվ երկուսն էլ ընկան հայր-բանվորի կողքին։

Չխաղացին նրանք էլ հատակի վրա,
Չսպասեցին էլ՝ զուր, որ հայրիկը գա տուն.
Նրանք փոքրի՜կ-փոքրիկ նահատակներ եղան—
Երեխան ու կատուն...






Նկ. Հ. ՇԱՎԱՐՇԻ

## ՄԻ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿԻ

Արև՛ ունես քո աչքերում,
Քո աչքերում, քո ձեռքերում,
Քո այդ փամփլիկ թաթիկներում։
Քո խատուտիկ աչիկներում։—
Պիտի նայես մի օր հեռուն,
Դրո՜շ պիտի պահես մի օր
Քո ամրացած ձեռիկներում,—
Ու չմարող իմ երգերով
Պիտի գնաս դեպի գրոհ...

# Թե ինչպես մի ճարպիկ մարդ խաբեց թագավորին, որն իրեն շատ խելոք էր համարում

*Վիլյամ Սարոյանը Ամերիկայի Միացյալ Նահանգների ամենաականավոր գրողներից մեկն է: Ծնվել է 1908 թվականին Կալիֆորնիայում, հայ ընտանիքում: Վ. Սարոյանի առաջին գիրքը լույս է տեսել 1934 թվականին: Այնուհետև նա տպագրել է մի շարք պատմվածքներ, պիեսներ, վիպակներ, վեպեր ու բանաստեղծություններ: «Ձեր կյանքի ամենալավ ժամանակը» (1939 թ.) պիեսի համար նրան շնորհվել է դրամատիկական քննադատների Ընկերության մրցանակ, ինչպես նաև Պուլիցերի մրցանակ, սակայն վերջինից Սարոյանը հրաժարվել է, ասելով՝ «Առևտուրը իրավասու չէ խնամակալելու արվեստը»:*

ՎԻԼՅԱՄ ՍԱՐՈՅԱՆ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Թագավորի մոտ եկավ խորհրդականը և ասաց.

— Մեր քաղաքում մի մարդ լույս ընկել, որն ստիպում է ազնիվ մարդկանց, որ իզուր տեղ փող տան իրեն:

— Ինչպե՞ս թե,— զարմացավ թագավորը: ‧‧

— Նա հատուկ շնորհք ունի,— ասաց խորհրդականը:— Որսում է ձեր հայացքը, արագ խոսում ձեզ հետ, և մինչև դուք ցլխի կընկնեք, թե ինչ եք անում, արդեն նրան փող էք տալիս, և նա անհայտանում է. ի միջի այլոց, նա փող վերցնում է միայն ամենախելոք մարդկանցից:

— Ես դրան չեմ հավատում,— ասաց թագավորը:

— Դա ճշմարիտ է,— ասաց խորհրդականը:

— Գտիր նրան,— հրամայեց թագավորը:— Ես ուզում եմ տեսնել, թե նա ինչպես կխաբի ինձ: Եթե դա նրան չհաջողվի՝ կթռցնեմ քո գլուխը:

Խորհրդականը գնաց այդ ճարպիկ մարդու մոտ և ասաց նրան.

— Թագավորը պատվիրեց, որ դու ներկայանաս և խաբես իրեն: Աշխատիր կատարել նրա հրամանը:

— Ե՞ս,— ասաց ճարպիկ մարդը:— Խաբել հենց թագավորի՞ն: Աստված արգելում է:

— Եթե դու այդ բանը չանես,— խոսեց խորհրդականը,— ես կկորցնեմ գլուխս, իսկ ինձ հետ գլխիցդ կզրկվես նաև դու: Հետևիր ինձ և գործիր ինչպես որ հարկն է:— Խորհրդականը նրան բերեց թագավորի մոտ: Թագավորն ասաց.

— Ինձ ասել են, որ դու հիմարացնում ես ամենախելոք մարդկանց և նրանցից փող ես վերցնում: Ես հպարտանում եմ իմ իմաստությամբ: Փորձիր խաբել ինձ:

— Ով ամենազոր թագավոր,— ասաց ճարպիկ մարդը,— ես ներում եմ խնդրում, դա անկարելի բան է: Ես գրավ եմ դրել իմ բոլոր գործիքները, իսկ առանց գործիքների ինձ չի հաջողվի խաբել նույնիսկ ամենադյուրահավատ անխելքին:

— Գնա և բեր քո գործիքները,— ասաց թագավորը:

— Բայց փող չունեմ,— պատասխանեց ճարպիկը:

— Ինչքա՞ն գումարով ես գրավ դրել այդ գործիքները:

— Երկու հարյուր ոսկեդրամով:

— Խորհրդական,— հրամայեց թագավորը,— փող տուր այս մարդուն, թող նա գնա բերի իր գործիքները: Տեսնենք ինչպես կխաբի ինձ:

Խորհրդականը երկու հարյուր ոսկի դրամ տվեց ճարպիկ մարդուն, որը խոնարհաբար գլուխ տվեց և խոստացավ վերադառնալ երկու ժամից հետո:

Թագավորը սկսեց սպասել: Խորհրդականը հազիվ նկատելի ժպտաց:

— Ինչո՞ւ ես ժպտում,— հարցրեց թագավորը:

— Եթե դուք պիտի սպասեք այդ մարդու վերադարձին,— ասաց խորհրդականը,— ապա սպասել կվիճակվի նաև ձեր երեխաներին, թոռներին ու ծոռներին: Դուք խաբված եք, ով վեհագույն և իմաստուն թագավոր. նրա գործիքները հենց նրա հնարամիտ խոսքերն են:



Հ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

## ԾԻՏՆ ՈՒ ՏՂԱՆ

— Ծիտիկ, միտիկ,
Ի՞նչ ես այդպես
Թռչում, ճչում.
Ճիկ, ճիկ, ճիկ։

— Սիրուն տղա,
Գարուն կգա՝
Երգով, ծաղկով
Անուշիկ։

Բույն եմ շինում
Պատի ճեղքում,
Ձագեր հանեմ
Սիրունիկ։

## ԾԱՂԻԿՆԵՐԸ

Գարնան մեղմ քամին
Փարվում է նախշուն,
Զուգված ծառերին,
Պոկոտում ծաղկանց
Թերթերը սիրուն
Ու տանում կամաց։
Եվ կարծես օդում
Թիթեռի գույն-գույն
Խմբեր են թռչում։

## ԾԻՏԻԿԻՆ

Է՛յ դու, ծիտիկ,
Իմ սիրունիկ,
Քուն մի մտիր,
Զգույշ եղիր։
Ուրուրը, տես,
Դիտում է քեզ։

Եթե իջնի
Ու քեզ տանի՝
Ո՞վ ինձ համար
Էլ երգ կասի։

Նկ. Բ. ՔՈԼՈԶՅԱՆԻ

## ԵՍ ՀՈ ՓՈՔՐԻԿ ՉԵՄ

Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

Ես հո փոքրիկ չեմ՝
Ինչպես Նունեն.
Նա պտամ չունի,
Իսկ ես ունեմ։
Ես արդեն գիտեմ
Ասել-խոսել,
Տատիկի խոսքը
Գիտեմ լսել։
Գիտեմ հայրիկս
Ինչ է անում՝
Գյուղից քիչ հեռու
Մեր ֆերմայում։
Թե ինչու ամեն,
Ամեն ամառ
Նա սար է տանում
Ոչխար ու գառ։
Ա՛յ, երբ մի քիչ էլ
Ես մեծանամ,
Իմ հայրիկի հետ
Սար կգնամ.
Ու գառնուկները
Լավ կպահեմ...
Ես հո փոքրիկ չեմ՝
Ինչպես Նունեն։

## ԱՅՍ ՏՂԱՆ

Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ

Ճըղ, ճըղ,
Ճղճղան,
Ինչ լալկան է
Այս տղան.
Ունի ամեն
Խաղալիք,—
Ե՛վ փիղ, և՛ արջ,
Ե՛վ ուլիկ.
Ի՞նչն է պակաս.
Ոչ մի բան,
Բայց ճղճղան
Այս տղան
Մի փուչ բանից
Լալիս է,
Ձայնն էլ անվերջ
Գալիս է...



## ՁՆԾԱՂԻԿՆԵՐԸ

ՌՈՒԲԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Արդեն շողում է գարնան արևը,
Թռչուններն իրենց նոր բույնն են հյուսում,
Հողից ելնում են կանաչ ծիլերը,
Զանգակ կարկաչով աղբյուրն է խոսում:

Ձմեռն իր սառը հետքերն է թողել,
Տեղ-տեղ դեռ ձյուն կա մոտիկ սարերում,
Փոքրիկ Վաչիկը քույր Նուշիկի հետ
Ձնծաղիկներ է դաշտում որոնում:
Երբ ձնծաղիկ է գտնում Նուշիկը,
Ուրախությունից ճչում է, կանչում,
Սակայն մռայլ է եղբայր Վաչիկը,
Որ ձնծաղիկ էլ դեռ չի ճանաչում:
— Ահա, տե՛ս, Վաչիկ, ինչքան եմ քաղել,
Որքան գեղեցիկ փունջ եմ ես կապել,
Իսկ դու չես գտել ոչ մի ձնծաղիկ.
Քո գտածները փաթիլ են փոքրիկ:
— Ճանաչում եմ ես, ի՛նչ է, չե՞մ տեսնում,
Ձնծաղիկներ, տե՛ս, իմ շուրջը շատ կան,
Բայց երբ գտնում եմ ու տեղից պոկում,
Հալչում են ճերմակ փաթիլի նման:





Ա. ՍԱՐԴՈՅԱՆ

Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ

Միայն առավոտյան, երբ հենց դպրոց էր շտապում, Սուրիկը հիշեց տնային առաջադրանքների մասին։ Երեկ ամբողջ օրը, դասերից հետո, նա տարված էր պինգ-պոնգ խաղալով։ Եվ ինչքան էլ հաջող էր ստացվում խաղը։ Սկզբում տարավ ծանրաշարժ Վանուշին, ապա 21:2 հաշվով խաղը տարավ ժիր Արտաշեսից, հետո 21:12 հաշվով ճամփու դրեց ճարպիկ Գեղամին՝ այդ համարյա չեմպիոնին։ Դա հո կատակ չէ։ Ուշ երեկոյան տուն վերադառնալով, նա բավականությամբ մտածում էր, թե ինչպես վաղը բոլորը կիմանան իր հաղթանակների մասին, կհիանան իր վարպետ խաղով և ծեռք կառնեն Վանուշին, Արտաշեսին ու Գեղամին։

Իսկ առավոտյան նրա առաջ ծառացավ իր համար ոչ այնքան դուրեկան մի այլ հարց՝ «իսկ տնային առաջադրանքնե՞րը»։ Այդ հարցը նրան ավելի շատ անհանգստացրեց այն պատճառով, որ իր հաշվով այդ օրը գերմաներեն լեզվի ուսուցչուհին իրեն պետք է դաս հարցներ։

«Բայց հնարագետ Սուրիկի համար դժվարություններ գոյություն չունեն»։ Պինգ-պոնգի հաջողություններով ոգևորված, նա իր մասին մտածում էր երրորդ դեմքով։ Դպրոցի ճանապարհին հիշելով իր խորամանկորեն մտածված պլանի մասին, նա մատը թափահարելով սեփական քթի առաջ, ինքն ի՛ր համար խրատական եղանակով նորից կրկնեց.

—Որպեսզի լավ աշակերտ համարվես, հարկավոր չէ ամեն օր դասերը սովորել, այլ պետք է իմանալ, թե որ օրն են քեզ հարցնելու և միայն այդ օրվա դասը պատրաստես։

Եվ ժամանակ չկորցնելով, Սուրիկը մի անգամ էլ ստուգեց իր ենթադրությունը.

— Այսպես ուրեմն, առաջին դասը ֆիզիկա է, ինձ չի հարցնի,— քրթմնջաց նա,— երկրորդը՝ ռուսաց լեզու, չի հարցնի, երրորդը՝ գերմաներեն է. կհարցնի՞, թե՞ ոչ...Համոյին, Ռուզանին ու Քնարիկին արդեն հարցրել է, իսկ նրանք դասամատյանում ինձ մոտիկ են, հերթն իմն է։ Կհարցնի,— հաստատ որոշեց Սուրիկը և նույնիսկ իր երեկվա հաղթանակները մոռանալով, սկսեց միջոցներ փնտրել։

—Առաջին և երկրորդ դասերին կարտագրեմ առաջադրանքները, կսովորեմ ոտանավորը, իսկ երրորդ դասին կպատասխանեմ, ահա և ամեն ինչ կարգին

է,— ուրախ բացագանչեց Սուրիկը։— Հաշիվը մնում է 21:2, հաղթանակն իմն է։

Թաքնվելով Մասլիկի լայն թիկունքի ետևը, առաջին և երկրորդ դասերին Սուրիկն արտագրում էր առաջադրանքը և թաքուն, կամացուկ կրկնում. «Դեռ ֆիխտենիրաում...դի պալմե...»։ Երրորդ դասին նա կարծես փշերի վրա էր նստած։ Անհանգիստ հետևում էր ուսուցչուհու յուրաքանչյուր շարժմանը, ձեռքը բարձրացնելով՝ տեղից վեր էր թռչում և շնչակտուր գոչում.

— Ե՛ս, ե՛ս ասեմ։

Իսկ ուսուցչուհին խորամանկ ժպիտով Սուրիկի կողմն էր նայում և զգուշացնում էր միայն։

— Հանգիստ նստիր, Սուրիկ, հերիք է տեղումդ թռչկոտես։

Չորրորդ դասին կատարվեց միանգամայն անսպասելին։ Բնագիտության դասատուն կանչեց Սուրիկին և կարճ ասաց.

— Դե, պատմիր դասը։

Սուրիկը լուռ էր։ Նա նույնիսկ չգիտեր, թե որ դասը պիտի պատմեր, ինչի մասին էր դասը։ Դե նրա հաշիվներով այդ պետք էլ չէր իմանալ, քանի որ բնագիտությունից նա նոր էր պատասխանել։

— Ի՞նչ ես լռել, խոսիր,— նորից Սուրիկին դիմեց ուսուցչուհին։

Սուրիկը դարձյալ լուռ է։ Ուսուցչուհին սպասում է։ Սպասում է նաև ողջ դասարանը։ Վանուշն ու Արտաշեսը, որ այդ օրը «4»-եր էին ստացել, ծաղրական հայացքով Սուրիկին էին նայում, որը դեռ երեկ այնքան ճարպիկ ու համարձակն էր, իսկ այժմ կծկված էր, փոքրացած ու խեղճացած։ «Սա քեզ համար պինգ-պոնգ չէ»,— ասում էին նրանց հայացքները։

— Ինչի՞ մասին պիտի պատմես, Սուրիկ,— հարցնում է ուսուցչուհին, ենթադրելով, որ նա երևի մոռացել է դասի թեման։ Սուրիկը լուռ է։ Դասարանից մեկը բարձրաձայն հուշեց։

— Փայտանյութի կառուցվածքը։

Սուրիկը մի րոպե ևս լռելուց հետո, երևի որոշելով գոնե մի բան ասել, մեքենայաբար և շատ անորոշ ձևով քրթմնջաց.

—Փայտանյութի կառուցվածքը...դա...դեռ ֆիխտենիրաում, դի պալմե...

Ընկերների քրքիջի և դատապարտող հայացքների տակ Սուրիկը նստեց տեղը, օրագիրը նետեց դարակը և չգիտես, թե ում առաջ արդարանալով, ծանր հառաչեց։

— Դարձյալ սխալվեցի։

— Դե, ինչպե՞ս է այժմ մեր հաշիվը,— դասամիջոցին նրան մոտենալով հարցրեց Արտաշեսը։

— 21:2 հօգուտ ինձ,— չարությամբ վրա տվեց Սուրիկը։

— Գուցե 4:2 հօգուտ ի՞նձ,— հարցրեց Արտաշեսը։— Չէ՞ որ երկուսը ես չէի, որ ստացա այսօր։



Սիրում էի ես,
Շապիկիս՝ նկար,
Ու ինչեր ասես,
Որ իմ մեջ չկար:

Բայց երբ այն օրից
Ինձ բերիր ձեր տուն,
Ես չունեմ հանգիստ,
Չունեմ խնդություն:

Մերթ նստում անքուն,
Թերթում ես, թերթում,
Մերթ նետում անկյուն,
Չես բացում կարդում:

Ես գիտեմ միայն
Արածիդ մասին.
— Գրքումս չկա,—
Ասում ես դասին:

Ու չես ամաչում,
Չես զգում ամոթ,
Ի՜նչ մաքուր էի,
Ի՜նչ դարձա քեզ մոտ...

## ԳՐՔԻ ԳԱՆԳԱՏԸ

ԱՐՄԵՆԱԿ ՂԱԶԻՆՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԳԻԺ ՔԱՄԻՆ

Վ. ՏԱԼՅԱՆ

Նստել էի պատշգամբում
Ու գիրք էի հանգիստ կարդում:
Մեկ էլ հանկարծ մի գիժ քամի
Վրա պրծավ հենց այդ ժամին,

Գիրքս թերթեց արագ-արագ,
Կարդաց ու վը՜զզ...շուտ փախավ բակ:

— Կորի՛ր, կոպիտ,— ասի նրան,—
Պիտի գնամ գրադարան:
Մարդ այդքան էլ գի՞ժ կլինի,
Ինչ ուզենա՝ այն էլ անի...

Քամին խնդաց, ծափ-ծափ արեց,
Թռավ եկավ՝ դեմս պարեց,
Գիրքս թերթեց, փչեց արագ
— Ի՞նչ ես փնտրում երկար-բարակ...

Բացեց էջը, ուր կանգ առա,
Ականջիս մեջ սուլեց՝ ահա...
Իսկ ես ասի՝ մի՛ խանգարիր,
Էլ տեղ չկա՞, գնա պարիր:

Գիրքը ամբողջ ես կարդացի,
Ելա փողոց ու գնացի.
Գիժ քամին էլ ճամփա ընկավ,
Թռվռալով ինձ հետ եկավ...

Վայ թե նա էլ գիրք է ուզում,
Թե չէ ո՞ւր է այդպես վազում:





# ԿԱՐՄՐԱԹԵՒԻԿՆԵՐԻ ԳՈՒԼՊԱՆԵՐԸ

ՕՐԱՍԻՈ ԿԻՐՈԳԱ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

Մի անգամ օձերը պարահանդես էին սարքել։ Նրանք հրավիրել էին գորտերին ու դոդոշներին, կարմրաթեւիկներին, կոկորդիլոսներին ու ձկներին։ Ձկները, քանի որ նրանք ոտքեր չունեն, չկարողացան պարել։ Սակայն, քանի որ պարահանդեսը տեղի էր ունենում գետի մոտ, նրանք լողալով մոտեցել էին ավազոտ ափին, դուրս էին ցցվել ջրից և ուրախ ծափահարում էին պոչերով։

Կոկորդիլոսները գեղեցկության համար հագել էին բանանե մանյակներ և ծխում էին Պարագվայի սիգարեթներ։ Դոդոշները ոտից գլուխ ձկան փայլուն թեփուկներ էին հագել և շրջում էին օրորվելով, ասես հենց լողում են։ Եվ ամեն ագամ, երբ նրանք խիստ հպարտ զբոսնելով, մոտենում էին գետափին, ձկները աղմուկ էին բարձրացնում ծաղրելով նրանց։

Անուշահոտ յուղերով խիստ օծված գորտերը ման էին գալիս հետևի թաթերի վրա։ Եվ, բացի դրանից, նրանցից յուրաքանչյուրը իր վզից լապտերի փոխարեն մի փոքրիկ լուսատտիկ էր կախել, որը ճոճվում էր ամեն մի շարժման ժամանակ։

Բայց ամենից գեղեցիկը, իհարկե, օձերն էին, Նրանք պարուհիների պես էին հագնված, և յուրաքանչյուրն էլ իր մաշկի գույնի հագուստով։ Կարմիր օձերը կարմիր շղարշից կարած շրջազգեստ էին հագել, կանաչները՝ կանաչ, դեղինները՝ դեղին, իսկ յարարա ցեղին պատկանող օձերը մոխրա-աղյուսագույն գծերով, գորշ շղարշից կարած շրջազգեստ ունեին, որովհետև յարարաներն այդպիսի մաշկ ունեն։

Իրենց շքեղ հագուստներով հատկապես աչքեցրել էին մարջանե օձերը, որոնք նուրբ շղարշից կարած կարմրա-սևա-սպիտակ երկար թիկնոցներ էին հագել և պարելիս գալարվում էին թղթե պայծառ ժապավենների պես։ Երբ օձերը պարում ու պտտվում էին, գետնին կպցնելով միայն իրենց պոչերի ծայրերը, բոլոր հրավիրվածներն էլ հիացմունքից հարբած, ծափահարում էին նրանց։

Միայն կարմրաթեւիկները, որոնք այն ժամանակ սպիտակ ոտքեր և այսօրվա պես հաստ ու ծուռ քիթ ունեին, տխուր էին. հիմար թռչունները տոնի կապակցությամբ չէին կարողացել զուգվել, նրանց մոտքով այդ բանը չէր անցել։ Այդ պատճառով էլ, տեսնելով, որ բոլորը պարահանդես էին եկել այդպես զուգված, նրանք տանջվում էին նախանձից։ Հատկապես նախանձում էին նրանք մարջանե օձերին։ Եվ ամեն անգամ, երբ մարջանե օձերից որևէ մեկը գեղեցիկ գալարումներով, իր ալեծածան, թափանցիկ հագուստով, անցնում էր նրանց կողքից, կարմրաթեւիկները մեռնում էին նախանձից։

Այն ժամանակ կարմրաթեւիկներից մեկն ասաց.

— Ես գիտեմ, թե ինչ պիտի անենք մենք։ Եկեք կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ հագնենք և մարջանե օձերին դուր կգանք։

Եվ, հանկարծ բարձրանալով օդ, նրանք թռան գետի վրայով ու, ներքև իջնելով քաղաքի կրպակներից մեկի մոտ, սկսեցին դուռը ծեծել։

— Տո՛ւկ-տո՛ւկ,—ծեծում էին նրանք իրենց ոտքերով։

— Ո՞վ է,—ձայն տվեց խանութպանը։

— Այդ մենք ենք, կարմրաթեւիկները։ Դուք վաճառելու համար կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ ունե՞ք։

— Ոչ, այդպիսի գուլպաներ չկան,—պատասխանեց խանութպանը։—Դե դուք գի՞ժ եք, ինչ է, այդպիսի գուլպաներ ոչ մի տեղ չեք գտնի։

Կարմրաթեւիկները թռան-հեռացան և ծեծեցին մի ուրիշ կրպակի դուռ։

— Տո՛ւկ-տո՛ւկ։ Դուք կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ ունե՞ք։

Խանութպանը պատասխանեց.

— Ինչպես ասացի՞ք։ Կարմրա-սևա-սպիտա՞կ։ Այդպիսի գուլպաներ դուք ոչ մի տեղ չեք գտնի։ Դուք պարզապես գիժ եք։ Ովքե՞ր եք դուք։

— Մենք կարմրաթեւիկներ ենք,—պատասխանեցին թռչունները։

Այն ժամանակ խանութպանն ասաց.

— Դե ուրեմն դուք գիժ կարմրաթեւիկներ եք։

Կարմրաթեւիկները նորից թռան-հեռացան և ծեծեցին երրորդ կրպակի դուռը։

— Տո՛ւկ-տո՛ւկ։ Դուք կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ ունե՞ք։

Խանութպանը գոռաց.

— Ինչպիսի՞։ Կարմրա-սևա-սպիտա՞կ։ Միայն ձեզ պես հիմար ու կտցավոր թռչունների մոտքով



կանցնի այդպիսի գուլպաներ պահանջել։ Անմիջապես հեռացեք այստեղից։

Ու խանութպանը, վերցնելով ավելը, ընկավ խեղճ կարմրաթևիկների վրա։

Կարմրաթևիկներն այդպես էլ եղան բոլոր կրպակներում, և ամեն տեղ քշեցին նրանց ու ամեն տեղ գիժ անվանեցին։

Եվ ահա այդ ժամանակ, մի զրահակիր, որը եկել էր գետից ջուր խմելու, որոշեց ձեռք առնել կարմրրաթևիկներին և, ամենահարգալից ձևով դիմելով նրանց, ասաց.

— Բարի երեկո, կարմրաթև տիկնայք։ Ես գիտեմ, թե ինչ եք փնտրում դուք։ Այդպիսի գուլպաներ ոչ մի կրպակում էլ չեք գտնի։ Գուցե դրանք վաճառվում են Բուենոս-Այրեսում, բայց այն ժամանակ դուք՝ հարկադրված պիտի լինեք խնդրել, որ դրանք ձեզ ուղարկվեն փոստային ծանրոցներով։ Միայն բուի՝ իմ հարսի մոտ կարող եք գտնել ձեզ անհրաժեշտ բանը։ Խնդրեցեք նրան, և նա ձեզ համար ձեռք կբերի կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ։

Կարմրաթևիկները շնորհակալություն հայտնեցին նրան և թռան դեպի այն քարանձավը, որտեղ ապրում էր բուն։

— Բարի երեկո, բու։ Մենք քեզնից կարմրա-սևա-սպիտակ գուլպաներ խնդրելու համար ենք եկել,— ասացին նրանք։— Այսօր օձերի մոտ մեծ պարահանդես կա և եթե մենք այդպիսի գուլպաներ գտնենք, ապա մարջանե օձերին դուր կգանք։

— Մեծ հաճույքով,—պատասխանեց բուն։—Մի քիչ սպասեք, ես հիմա կվերադառնամ։

Եվ թռչելով-հեռանալով, բուն կարմրաթևիկներին թողեց մենակ։ Որոշ ժամանակ անց նա վերադարձավ և գուլպաներ բերեց, սակայն դրանք բոլորովին էլ գուլպաներ չէին. յուրաքանչյուր գուլպա դա մարջանե մի օձի մաշկ էր և այդ հրաշալի, պայծառ գույնի մաշկը քերթվել էր այն օձերից՝ որոնց բուն հենց նոր էր որսացել։



— Ահա ձեզ գուլպաներ,—ասաց բուն։—Հիմա դուք կարող եք հանգիստ լինել։ Միայն չմոռանաք այն, ինչ պիտի ասեմ ձեզ. ամբողջ գիշերը պարեցեք, անընդհատ պարեցեք՝ առանց մի րոպե կանգառնելու, պտույտներ գործեք, գլխի վրա կանգնեցեք, մի խոսքով, պարեցեք ինչպես ուզում եք, միայն թե ոչ մի րոպե կանգ չառնեք։ Իսկ եթե կանգ առնեք, վայ ձեզ։

Սակայն հիմար կարմրաթևիկներն այնպես էլ չհասկացան, թե ինչ վտանգ էր սպառնում իրենց, և, խելքները կորցնելով ուրախությունից, սկսեցին իրենց երկար ոտքերին քաշել օձի մաշկից պատրաստած գուլպաները։ Այդպես էլ երջանիկ ու գոհ նրանք թռան պարահանդեսի։

Կարմրաթևիկներին տեսնելով այդպիսի շքեղ գուլպաներ հագած, բոլորն սկսեցին նախանձել նրանց։ Օձերը չուզեցան նրանցից բացի ուրիշների հետ պարել, բայց քանի որ կարմրաթևիկները ոչ մի վայրկյան կանգ չէին առնում, հնարավոր չէր որոշել, թե ինչից էին պատրաստած այդ զարմանալի գուլպաները։

Սակայն կամաց-կամաց օձերն սկսեցին ինչ-որ վատ բան կասկածել։ Եվ երբ կարմրաթևիկները պարելով սլացան նրանց կողքից, օձերը կռացան մինչև գետին, որպեսզի ավելի լավ կարողանան զննել տարօրինակ գուլպաները։

Վատ էին զգում իրենց հատկապես մարջանե օձերը։ Նրանք աչքները չէին հեռացնում գուլպաներից և ձգվում էին, աշխատելով լեզվով հասնել կարմրաթևիկների ոտքերին, որովհետև լեզուն օձերին այն ծառայությունն է մատուցում, ինչ որ ձեռքը՝ մարդուն։ Սակայն կարմրաթևիկները շարունակ պարում, հա պարում էին, առանց մի վայրկյան կանգ առնելու, թեպետ արդեն բոլորովին ուժասպառվել էին։

Մարջանե օձերը, տեսնելով, որ կարմրաթևիկները հազիվ են կարողանում ոտքի վրա կանգնած մնալ, գորտերից խնդրեցին նրանց լապտերները, որոնք ոչ այլ ինչ էին, քան եթե փոքրիկ լուսատտիկներ, և, խմբվելով մի տեղ, սպասեցին, մինչև որ կարմրաթևիկները հոգնությունից գետնին կընկնեին։

Եվ իսկապես, մի րոպե անց մի կարմրաթևիկ, բոլորովին ուժասպառվելով, սայթաքեց, կոկորդիլոսներից մեկի շպրտած սիգարի մնացուկին կպչելով, հավասարակշռությունը կորցրեց ու վայր ընկավ։ Մարջանե օձերը նրա կողմը նետվեցին և իրենց լապտերներով լուսավորեցին ոտքերը։ Նրանք հասկացան, թե ինչից են պատրաստած կարմրաթևիկի գուլպաները և այնպիսի մի ֆշշոց բարձրացրին, որ լսելի էր նաև Պարանայի մյուս ափում։

— Սրանք գուլպաներ չեն,—գոռացին օձերը։— Մենք գիտենք, թե ինչ են սրանք։ Մեզ խաբել են։ Կարմրաթևիկները սպանել են մեր քույրերին և գուլպաների փոխարեն հագել նրանց մաշկը։ Նրանք մարջանե օձերի մաշկից պատրաստած գուլպաներ են հագել։

Այդ լսելով, կարմրաթևիկները ահից դողացին և հասկանալով, որ մատնված են, ուզեցին անմիջապես թռչել-հեռանալ, սակայն նրանք այնքան հոգնած էին, որ արդեն ուժ չունեին անգամ թևերը շարժելու։ Այդ ժամանակ էլ մարջանե օձերը հարձակվեցին նրանց վրա և, փաթաթվելով ոտքերի շուրջը, մի ակնթարթում կտոր-կտոր արին անիծյալ գուլպաները։ Եվ կարմրաթևիկների մերկ ոտքերն էլ ծակծկեցին իրենց թունոտ խայթոցներով։

Ցավից խելքները կորցրած կարմրաթևիկները տեղից տեղ էին ընկնում, փորձելով ազատվել իրենց ոտքերին փաթաթված օձերից։ Վերջապես, տեսնելով, որ անիծյալ գուլպաներից և ոչ մի կտոր էլ չի մնացել, օձերը թողեցին կարմրաթևիկներին և, ուղղելով իրենց ճխլտված շղարշե թիկնոցները, հոգնած սողացին-հեռացան։ Բացի դրանից, մարջանե օձերը հավատացած էին, որ կարմրաթևիկները շուտով կմեռնեն. չէ՞ որ խեղճ կարմրաթևիկներին խայթող օձերի կեսը թունավոր էին։

Բայց կարմրաթևիկները չմեռան։ Կծկվելով անտանելի ցավից, նրանք դեպի ջուրը վազեցին։ Նրանք գոռում էին ցավից, և նրանց ոտքերը, որոնք առաջ սպիտակ էին, օձի թույնից կարմրեցին։ Օրերն անցնում էին իրար հետևից, իսկ կարմրաթևիկների ոտքերը շարունակ ցավում էին, ասես կրակից այրվում։ Եվ նրանք բոլորովին կարմրեցին, արյան պես կարմրեցին, ու այդ բոլորը օձի թույնից։

Այն օրվանից շատ, շատ ժամանակ է անցել։ Բայց նույնիսկ հիմա էլ են կարմրաթևիկները օրերով կանգնում ջրի մեջ, որպեսզի գոնե մի քիչ հովացնեն իրենց ոտքերը, որոնք դեռևս շարունակ ցավում են և այդպես էլ մնացել են կարմիր։



Երբեմն նրանք դուրս են գալիս ջրից և մի քանի քայլ են անում գետնի վրա, որպեսզի տեսնեն, թե արդյոք լավ չէ՞ իրենց վիճակը։ Սակայն գետնի վրա նորից վերսկսում են խայթոցների ցավերը, և կարմրաթևիկները նորից ջուրն են վազում։ Երբեմն նրանց ոտքերն այնպես են վառվում, որ նրանք ծալում են ոտքերից մեկը և ժամեր շարունակ կանգնած մնում են ջրի մեջ ու չեն կարողանում տեղից շարժվել։

Ահա ձեզ կարմրաթևիկների պատմությունը, որոնք առաջ սպիտակ ոտքեր ունեին, իսկ հիմա՝ կարմիր։ Բոլոր ձկներն էլ գիտեն այդ պատմությունը և ծիծաղում են նրանց վրա։ Իսկ կարմրաթևիկները, քանի որ կանգնած են ջրի մեջ, որպեսզի հովացնեն հիվանդ ոտքերը, առիթը բաց չեն թողնում ձկներից առնելու իրենց վրեժը։ Եվ բավական է, որ որևէ խիզախ ձուկ մոտիկ լողա նրանց, նրանք ջրի մեջ են իջեցնում կտուցները և կուլ տալիս հանդուգն ձկանը։

Ռուս. թարգմ. ԳԱՐԵԳԻՆ ԲԵՍ






Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ        Նկ. Գ. ԽԱՆՋՅԱՆԻ

Ընկերներ էին, ավելի ճիշտ՝ հարևաններ։

Հակոբը «Պապի բալան» էր. նա շատ էր սիրում պապի հետ այգի գնալ. դասերից հետո նրան միշտ կարելի էր տեսնել այգում. կամ խաղողի վազի ավելորդ մատերն էր կտրատում, կամ մանգաղով հնձում էր թմբերի մեջ առատորեն աճած խոտը, երբեմն էլ գնում էր կոլտնտեսության քանջարանոցը՝ պամիդորի բուկը տալու։

Մինասը գյուղում հայտնի էր որպես շնորհալի երեխա։ Նա ինչ-որ տեղից սրածայր հատիչներ էր ձեռք գցել ու նորակառույց տների վրա զանազան բաներ էր քանդակում՝ նուռ, խաղող, կամ պարզապես, «Շենքս կառուցվեց 1940 թ.»։ Ընկերները նրան վարպետ Մինաս էին կոչում։ Գյուղում բոլորը գոհ էին նրանից, բացի ակումբի վարիչից, որը ոչ մի կերպ չէր կարողանում ներել նրան։ Մինասը ակումբի հետևի պատի վրա փորագրել էր իր անունը, մի չարաճճի էլ անունի առաջ ծուռտիկ տառերով մականունն էր ավելացրել, ստացվել էր «Վարպետ Մինաս»։

Իսկ Սերոբն արդեն սովորել էր իր մականունին՝ «Թքե՛մ-ծգե՛մ»։ Նա նույնիսկ մի քիչ պարծենում էր դրանով։ Սրա նրա հետ կռիվն սկսելուց առաջ չալտիկ գլխարկն աչքերին էր քաշում և թունավոր քմծիծաղով ասում.

— Լսած կլինես, ինձ Թքեմ-ծգեմ Սերոբ են ասում, հա՞...

Ու ափին թքելով հարձակվում էր հակառակորդի վրա։

Սերոբն ինքն էր կռվել ու, ինչպես գյուղացիներն էին ասում, «ղալմաղալ» որոնում։ Օրերով դպրոց չէր մտնում, իսկ եթե գնում էր, ապա գնում էր հատկապես դասամիջոցների համար։ Կանգնում էր միջանցքում և հերթով խփում մոտով անցնող աշակերտների գլխին ու հռհռալով կրկնում.

— Թը-քեմ... Ձը-գեմ...

Սերոբին չէին սիրում, բայց նրանից վախենում էին։ Փոքրիկ աշակերտներն իրար հետ վիճելիս Սերոբի անունով էին միմյանց վախեցնում և, եթե որևէ մեկին հաջողվում էր շահել Սերոբի հովանավորությունը, նա ընկերների մեջ հաղթող աքաղաղի նման էր քայլում, մինչև որ Սերոբին ծանձրացներ հովանավորի վիճակը։ Բանը վերջանում էր նույն հռհռոցով, լսվում էին նույն բառերը.

— Թը-քեմ... Ձը-գեմ...

Եվ նախկին հովանավորյալի գլխին էին իջնում հարվածները։

Միայն Հակոբն ու Մինասը չէին վախենում Սերոբից։ Նրանք երկուսով մի անգամ գետափին լավ դնքսել էին նրան, և հենց այդ ժամանակ էլ պարզվել էր, որ չնայած իր մեծախոսությանն ու կռիվ անելու սովորությանը, Սերոբը վախկոտ է։ Այդ օրվանից նա ոչ մի անգամ չէր համարձակվել ձեռք բարձրացնել Հակոբի կամ Մինասի վրա, իսկ նրանք էլ հանդարտ տղաներ լինելով, Սերոբի հետ նոր «հանդիպում» չէին ուզում ունենալ։

Այսպես մեծանում էին իրար հետ նույն գյուղում, նույն թաղում։ Փողոց դուրս գալիս առաջինն իրար էին տեսնում։ Սերոբը չհամբերելով, ծաղրում էր.

— Բարև, Պապի բալա։

— Բարև, Վարպետ Մինաս։

Իսկ Մինասն ու Հակոբը ժպտում էին ու մեծահոգաբար նրա մականունը չտալով պատասխանում.

— Բարի լույս, Սերոբ։

Սկսվեց Հայրենական Մեծ պատերազմը, գյուղի երիտասարդ տղամարդիկ գնացին ռազմաճակատ, գնացին նաև Մինասի ու Հակոբի հայրերն ու Սերոբի ավագ եղբայրը։ Այդ ժամանակ տղաները տասներկու-տասներեք տարեկան էին։ Հակոբն ու Մինասը սովորում էին վեցերորդ դասարանում, իսկ Սերոբը երկրորդ տարին էր, որ, ինչպես գյուղացիներն էին ասում, ծառից կապած այծի նման պտտվում էր նույն տեղում՝ չորրորդ դասարանում։

Տղաների գործը շատ ծանրացավ։ Գյուղում մնացած մեծահասակները՝ կին թե տղամարդ, լծվեցին կոլտնտեսության այգիների մշակման գործին, տնամերձ այգիներն ամբողջովին մնացին երեխաների խնամքին։ Հակոբն ու Մինասն անտրտունջ տանում էին սովորելու և միաժամանակ տնտեսության մեջ աշխատելու դժվարությունը, իսկ Սերոբը դպրոցը թողեց։

— Պետքս չի,— ասում էր նա,— մեկ է, կռիվ է...

Իսկ երբ դպրոցը թողնելու համար որևէ մեկը նախատում էր նրան, նա չարանում էր, չալտիկ գլխարկն աչքերին քաշում և կրկնում սիրած նախադասությունը.

— Լսած կլինես, ինձ Թքեմ-ծգեմ Սերոբ են ասում, հա՛...

* * *

Արտասովոր դաժան ձմեռ էր սպասվում 1942 թվականին։ Դեռևս հոկտեմբերին այնպիսի ցրտեր եղան, որ գյուղի ծերերը իրենց կյանքում քիչ էին տեսել։

— Ես, էս ա հարիր տարեկան վայ թե ըլեմ,—

ասում էր Բավական տատը,— բայց ըսենց ցրտեր մեկ էլ Լոռիս Մելիքովի կռվին եմ տեսել։

Մարդիկ քմծիծաղով էին լսում Բավական տատին, բայց մի բան բոլորի համար պարզ էր. պետք էր շտապ կերպով վերջացնել խաղողի բերքահավաքը և այգիները թաղել, թե չէ կցրտահարվեին։

Սակայն այնքան էլ հեշտ չէր այդ, գյուղի աշխատավորները շատ էին պակասել։ Դպրոցում պարապմունքները ժամանակավորապես դադարեցրին, բոլոր ուսուցիչներն ու բարձր դասարանների աշակերտները բաժանվեցին այգեգործական բրիգադաների վրա։ Մի քանի օր հետո բերքն արդեն հավաքված էր ու հանձնված պահեստ։ Թաղն սկսվեց։

Օրեցօր եղանակն ավելի էր ցրտում։ Կոլտնտեսության նախագահ Հրանուշն ու բրիգադավարները ամեն առավոտ անհանգիստ հայացք էին գցում Արագածին և Արայի լեռանը։ Ձյունն օրեցօր ավելի ու ավելի էր վար իջնում, դաժան ձմեռը մոտենում էր։

Գյուղը գրեթե դատարկվել էր, կոլտնտեսականների մի մասը այգիներում էր գիշերում, իսկ ովքեր էլ որ տուն էին գալիս, գալիս էին ուշ երեկոյան և աքաղաղների առաջին կանչին՝ նորից գնում։

Փոստի ցրիչը, որ գյուղում ամենաթանկագին մարդն էր, քանի որ նա էր բերում թերթերն ու ռազմաճակատից ուղարկվող նամակները, գրեթե գյուղ չէր մտնում։ Նա շատ լավ գիտեր, թե որտեղ պիտի որոնել գյուղի մարդկանց։ Այգիներում նամակներն ու թերթերը բաժանելով, ինքն էլ ծառից կախում էր դատարկված պայուսակն ու բահը վերցնում։

Հակոբն ու Մինասը կոլտնտեսականներին զարմացրել էին իրենց աշխատունակությամբ։ Նրանք իրենց տնամերձ այգիներն արդեն թաղել էին ու երկուսով էլ օգնության էին գնում կոլտնտեսականներին։ Երկուսն էլ նիհարել էին, այնքան նիհարել, որ կանայք խանդաղատանքով գլուխներն էին օրորում։

— Խեղճ երեխեքը փշատի կորիզ են դառել։

Նրանք միշտ միասին էին աշխատում։ Թմբի երկու կողմից խոնավ հողը փորում էին ու շերտ-շերտ դնում խաղողի կանաչ վազերի վրա։

Հրանուշն ամեն անգամ նրանց գործը տեսնելով ժպտում էր.

— Չէ՛, որ էդ մի մատ երեխաները էդքան քրտինք են թափում, մեր այգիները բաց չեն մնա, կհասցնենք։

* * *

Սերոբը շատ էր խեղճացել, գյուղում ոչ ոք իրեն այնպես մենակ չէր զգում, ինչպես նա։ «Թքեմ—ծգեմի» հետ ոչ ոք չէր ուզում ընկերություն անել։ Ասենք դրա ժամանակն էլ չկար, բոլորն էլ զբաղված էին, այնքան զբաղված, որ ոչ ոք «ղալմաղալ» անելու ախորժակ չուներ։

Բավական տատն ամեն անգամ Սերոբին պատահելիս ասում էր.

— Հը՜, տղա ես, հիմի թքա-ծգա, ժամանակը հիմի ա, մերդ, էն ա, կոլտնտեսության այգիներից տուն չի գալիս, Գուրգենը քանակ ա, թքա-ծգա, տնամերձը հողի տակն արա։

Սերոբին չէր կարելի ծուլության մեջ մեղադրել։ Նա Հակոբից ու Մինասից պակաս չէր ուզում աշխատել, բայց, ինչպես ծերերն էին ասում, «մի ձեռը ծափ չէր տալիս»։

Հրանուշը Սերոբի մորը թույլատրել էր, որ մեկ օր տանը մնա, որդու հետ տնամերձ այգին թաղի, բայց մայրը բարկացել էր։

— Սրանք էլ նրա պես երեխեք չե՞ն, թող թաղի է՛լի...

Սերոբն ինքն էլ չէր ուզում, որ մայրը տանը մնա, ի՞նչ կասեին մարդիկ, դպրոցից դուրս է եկել, մի երկու թումբ այգի էլ չի կարող թաղե՞լ։

Նա ամեն օր բահն առած գնում էր տնամերձ այգին, միայնակ, թմբի մի կողմն ընկած փորում էր ու հողը խաղողի վազերի վրա լցնելով նայում, թե ինչքան է արել ու դեռ ինչքան էլ մնում է։

Հակառակի պես ոտքը վնասեց, իսկի չէր էլ հիշում, ինչպես եղավ, քարի՞ էր տվել, թե՞ փուշ էր մտել պատռված չստի արանքից։ Ոտքն ուռել էր, կարմրել ու բահին դնելիս ցավում էր։

Ուշ երեկոյան վերադարձած մայրը բանի տեղ չդրեց Սերոբի կաղալը։

— Հը՞, խամո՞վ ես ընկել,— դառնացած ասաց



նա,—ես էլ պիտի ասեմ, տղա ունեմ, քու հասակին տղաները տուն են պահում։

Սերոբը ոչինչ չասաց, կշտամբողը մայրն էր, նրան չէր կարելի «թքեմ-ծգեմ» ասել։

Գիշերը ոտքն ավելի ուռեց, անտանելի ցավն ու ջերմությունը Սերոբի քունը կտրեցին։ Լուսադեմին նա այնպես բարձր էր տնքում, որ հոգնած ու քնահարամ մայրն արթնացավ։

—Սերո՞բ, Սերո՛բ։

—Թքե՛մ-ծգե՛մ,—պատասխանեց տղան ցածրաձայն։

—Ինչ ասացի՞ր։

Մայրը տարակուսած վեր կացավ, լույսը վառեց և մոտեցավ տղայի մահճակալին։



Սերոբի աչքերը փակ էին, երեսը կարմիր ու քրտնած, աջ ոտքն ուռած ու կարմրած կախվել էր մահճակալից։

—Այ տղա, Սերոբ,—վախեցած ասաց մայրը։

Տղան չպատասխանեց։ Մայրը ձեռքը դրեց նրա ճակատին։

—Վայ, բռանում ես, երեխաս վառվում ա...

Առավոտյան ուշաթափ Սերոբին տարան շրջկենտրոն՝ հիվանդանոց։

—Արյան վարակում է,—ասաց բժիշկը։

* * *

Այգեթաղը գրեթե վերջանում էր, կոլխոզի նախագահ Հրանուշի դեմքը օրեցօր պայծառանում։ «Զէ՛, մի քանի հեկտար մնաց, բանակ գնացած տղաների առաջ ամոթով չմնացինք» մտածում էր նա։ Իսկ Բավական տատը բաց էր արել իր օրհնությունների տոպրակը։ Քանի գործն առաջ էր գնում, Բավական տատն այնքան քաղցրանում էր, այժմ նա ոչ ոքի հետ չէր խոսում առանց «չարդ տանեմ»-ի։

Սերոբին էլ չէր մոռանում.

—Աղջի, չարդ տանեմ, ո՞նց ա էն քոփեն,—ամեն օր հարցնում էր Սերոբի մորը,—աղջի, բա տնամերձդ անթա՞ղ մնաց...

Մի քանի տնամերձ այգի ու երեք հեկտար կոլտնտեսության այգիներից դեռևս թաղված չէին, երբ երեկոյան ակումբավարը ռադիոբարձրախոսը միացրեց։ Տուն դարձող գյուղացիները բահերն ուսերին մի պահ կանգ առան ակումբի առաջ ռազմաճակատից ամփոփագիրը լսելու։ Բայց ամփոփագիրն արդեն հաղորդել էին, այժմ կին հաղորդավարը հատ-հատ ասում էր.

—Ուշադրությո՛ւն, ուշադրությո՛ւն, Արարատյան դաշտի բնակիչներին, բոլոր կոլտնտեսություններին, սովխոզներին, մեքենատրակտորային կայաններին, կրկնում ենք.Հիդրոմետ ծառայության վարչության տվյալների համաձայն՝ այս գիշեր Արարատյան դաշտում և ռեսպուբլիկայի ուրիշ շրջաններում սպասվում է ջերմաստիճանի խիստ անկում, հնարավոր է անթաղ այգիների ցրտահարություն, առաջարկվում է...

Հինգ րոպե հետո ամբողջ գյուղը բերանացի գիտեր Հիդրոմետ ծառայության վարչության տվյալները։ Շատերն այդ տվյալներին չէին հավատում։

—Դրանց տվյալները ե՞րբ են ճիշտ եղել։

Բայց կոլտնտեսականների մեծ մասը պնդում էր.

—Տո, ո՞վ ա իմանում, հակառակ ա, մեկ էլ տեսար ճիշտ դուրս եկավ։

Այլևս ոչ ոք չէր մտածում տուն մտնելու մասին, հենց փողոցից փոքր երեխաների հետ տները լուր ուղարկելով վերադառնում էին անթաղ այգիները։



— Էլ չի կարա, էլ պրծավ,—ծիծաղում էին մարդիկ,—հիմի էլ ցուրտը վախենալու չի։

Հարյուրավոր բահերը միանգամից խըրվեցին խոնավ հողի մեջ։ Ցուրտ, լուսնկա գիշերն աշխատանքն այնպես էր եռում, որ մարդիկ քրտնել էին, ինչպես հնոցի մոտ։ Կատակում էին իրար, ձայն տալիս.

— Մաթոս բիձա, կանգնիլ մի, կսառես։

— Հրանուշ, էսօրվա աշխօրը Մաթոս բիձի վրա կգրես։

Իսկ գյուղում հայտնի սրախոս Մաթոս բիձան լսում էր ու խոսքի տակ չմնալով ասում.

—Հրանուշ ջան, սրանց բերանը փակի, թե չէ էսա, հողով փակում եմ հա,—բարձրացնում էր հսկայական ճիմերն ու շուռ տալիս վազերի վրա։

Կես գիշերին, երբ աշխատանքն արդեն ավարտում էին, թմբերի մեջ այս ու այնտեղ ջուրն սկսում էր սառչել։

—Պա՛հ, պա՛հ, պա՛հ, պա՛հ,—ասաց Մաթոս բիձան,—ա՛յ տղա, առավոտը գետինը պոպոք կլնի։

—Ջանդ սաղ, Մաթոս բիձա, պոպոքն էլ կջարդենք,—պատասխանեցին այս ու այն կողմից։

Հակոբը, Մինասն ու մի քանի տղա այս գիշեր աշխատող կոլտնտեսականների հետ չէին։

—Ա՛յ տղա,—նկատեց Մաթոս բիձան,— էս ո՞ւր են մեր մանրապճեղները։

Ոչ ոք չգիտեր։ Մի պառավ կին քնքշանքով ասաց.

—Վայ թե բեզարել են խեղճ երեխեքը, գնացել են քնել։

Լույսը դեռ չէր բացվել, երբ գործը վերջացրած կոլտնտեսականները տուն էին դառնում։ Նրանք այնքան հոգնած էին, որ հազիվ էին տանում փոշոտ բահերը, որ ծանրացել, կարծես մի-մի փութ էին դարձել։ Բայց մարդիկ ուրախ էին, հոգնած ոտքերը սառած, կարծրացած գետնին խփելով նրանք օրորում էին գլուխներն ու ցածրաձայն զրուցում։

Նույն ժամանակ Սերոբենց տնամերձ այգուց վերադառնում էին Հակոբը, Մինասն ու մի քանի տղաներ։ Նրանց հետ վերադառնում էր նաև Սերոբի մայրը։ Նա չգիտեր, թե ինչ բառերով շնորհակալություն հայտնի տղաներին։ Այգին փրկված էր, խաղողի վազերն այժմ խաղաղ հանգստանում էին հողի հաստ շերտի տակ, այժմ որքան ուզում է, թող սեղմի կարծրացող գետինը, վազերին չի հասնի, չի վնասի...

Տասն օր հետո հիվանդանոցից տուն վերադարձավ Սերոբը։ Նա նիհարել էր, գունատվել, գլուխն այժմ այնպես բարձր չէր բռնում, ինչպես առաջ, ոչ ոքի գլխին չէր խփում կրկնելով սիրած բառերը.

—Թ՛ը-քե՛մ—ձը-գե՛մ։

* * *

Երևի դուք կուզենայիք իմանալ, թե հետո ինչ եղան Հակոբը, Մինասն ու Սերոբը։

Հակոբը՝ «Պապի բալան» հիմա գյուղատնտես է և կոլտնտեսության նախագահ Հրանուշի օգնականը։

Մինասը հավատարիմ մնաց իր կոչմանը։ Նա այն վարպետ Մինասն է, որ մեր քաղաքի նորակառույցների զարդերն է քանդակում։

Իսկ կոլտնտեսության այգեգործական առաջին բրիգադի օղակավար Սերոբը հիմա էլ նույն կռվարարն է, այժմ էլ նա «ղալմաղալներ» է սարքում Հրանուշի հետ, գյուղատնտես Հակոբի հետ, բրիգադավարի հետ, իր օղակի կոլտնտեսականների հետ ու մեկ-մեկ կրկնում.

—Լավ կլինես, ինձ Թքեմ-ձգեմ Սերոբ են ասում, հա՛...

Բայց նրանից այլևս չեն նեղանում, բոլորն արդեն լավ են ճանաչում այդ հրաշալի աշխատողին, իսկ Բավական տատը, որը դեռ ողջ և առողջ է, ասում է.

—Ականջ մի արեք, չարդ տանեմ, պոզավոր կովը հարու չի տա...



# ԵՐԵՔ ՈՐԴԻՆԵՐ

(Ըստ Վ. Օսեևայի)

Ս. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ

*Տուն էին դառնում գյուղի աղբյուրից*
*Երեք մայրերը՝ կուժները ուսին։*
*Ու քայլում էին՝ կռացած բեռից,*
*Խոսում աշխարհի ու որդոց մասին։*

*Մեկը մինուճար որդուն էր գովում.*
*—Տղա մի ասա, մի բլբուլ ասա,*
*Էնպես շնորհքով երգում է, պարում,*
*Որ արար աշխարհ կգա թամաշա։*

*—Բա իմ ասլանը,—մյուսն էր ասում,—*
*Հազարի միջից ջոկված է ասես.*
*Համ բոյ ու բուսաթ, համ գիր ու ուսում,*
*Գրքից չի պոկվում գիտնականի պես։*

*Լուռ էր երրորդը և նրա կողքին*
*Քայլում էր տխուր ու գլուխը վար.*
*Հատուկ շնորհքով չէր փայլում որդին*
*Նա ինչը գովեր, ինչո՞վ պարծենար։*

*Այսպես տուն էին դառնում աղբյուրից*
*Երեք մայրերը՝ բեռի տակ հոգնած.*
*Ու հանկարծ տեսան, գյուղի մի ծայրից*
*Գալիս են ջահել որդիքը նրանց։*

*Եկան ու անցան մայրերի կողքով,*
*Միայն երրորդի որդին կանգ առավ,*
*Հոգնած մոր ուսից՝ մի զուսպ խնամքով*
*Իջեցրեց կուժը և ինքը տարավ...*

*Տուն էին դառնում գյուղի աղբյուրից*
*Երեք մայրերը, քայլում սուս ու փուս.*
*Միայն երրորդի աչքի խորքերից*
*Բախտավոր մի շող ճառագում էր դուրս։*

# ԸՆԿԵՐՆԵՐԸ

ՎՌԱՄ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Մուժը գյուղն է իջել սարից,
Երկինքն էլ ձյուն է մաղում,
Բայց շատերը սահում նորից,
Զմշկում են ու խաղում։

Բոլորն ուրախ այս առավոտ
Թռչկոտում են դես ու դեն,
Իսկ Լևիկը՝ խաղի կարոտ,
Իր սահնակն է շինում դեռ...

Արդյոք ինչո՞ւ նա դեռ կարգին
Իր սահնակը չսարքած՝
Այստեղ վազեց ու սառույցին
Զարդեց սահնակն իր հանկարծ։

— Ի՞նչ ես տխրել,—ձայնում էին
Ընկերները լիասիրտ,—
Արի, խաղանք սարալանջին,
Արի, սահենք միասին։

Վարպետ Սոսն էլ չհամբերեց
Եվ առած մուրճն իր սիրուն,
Օգնեց սիրով, կարգի բերեց
Նրա սահնակը իսկույն։

Ուրախացավ Լևիկը մեր
Ու վար սահեց լանջով թեք,
Ով ունենա լավ ընկերներ,
Չի տխրելու նա երբեք։

## ԵՂԵԳՆ ՈՒ ԾԱՌԸ

Ա. ՇԻՐՈՅԱՆ

Մի չոր եղեգ, աչքն անտառին,
Ասաց հսկա կաղնի ծառին.
— Այդ ինչի՞ց է սա, ինչի՞ց,
Որ մի չնչին քամու շնչից
Մենք մրսում ենք, սաստիկ դողում,
Իսկ դուք դրսում,
Ոտներդ հողում,
Ոչ դողում էք, ոչ էլ մրսում։
— Որովհետև,—ասաց ծառը,—
Մեզ պաշտպանում է անտառը.
Մեր արմատը խորն է հողում,
Դրա համար էլ չենք դողում։

*Մ. ՊՐԻՇՎԻՆ*



Կարեկցելով տապալված կեչուն, նրա վրա նըստած հանգստանում էի ու նայում մեծ թխենուն, մերթ վերանալով նրանից, մերթ նորից զարմացած նրան դառնալով. ինձ թվում էր, թե թխենին հենց այստեղ, աչքիս առաջ զուգվում է իր թափանցիկ կարծես կանաչ աղմուկից պատրաստված հագուստով. այո, մոխրագույն, դեռևս չզուգված ծառերի ու խիտ թփերի մեջ նա կանաչ էր, և միևնույն ժամանակ այդ կանաչի միջից ես նրա հետևում տեսնում էի իրար մոտ աճած սպիտակ կեչիները: Բայց երբ ես վեր կացա և ուզում էի հրաժեշտ տալ կանաչ թխենուն, ինձ թվաց, թե այնտեղ իսկի էլ կեչիներ չէին երևում: Ի՞նչ բան էր դա: Կամ այդ ես էի հնարել, որ այնտեղ կեչիներ կային, կամ... կամ թխենին զուգվել էր այն միջոցին, երբ ես հանգըստանում էի...




Դաշտերում ձյունը հալչում է, իսկ անտառում գետնի վրա ու ծառերի ճյուղերին, դեռ կիտված են ձեռք չտված, ամուր բարձերի նմանվող ձյուները: Ծառերը կանգնած են ձյունով կաշկանդված: Բարակ բները կռացել են գետնին, սառել ու ժամ առ ժամ սպասում են ազատվելուն:

Վերջապես գալիս է այդ տաք ժամը՝ անշարժ ծառերի համար ամենաերջանիկ, իսկ կենդանիների ու թռչունների համար ամենասարսափելի ժամը:

Վրա է հասնում տաք ժամը: Ձյունն աննկատելիորեն հալհլում է:

Ահա անտառի քար լռության մեջ կարծես ինքնիրեն շարժվեց եղևնու ճյուղն ու ճոճվեց: Եվ հենց այդ եղևնու տակ, նրա լայն ճյուղերով ծածկված, քնած է նապաստակը: Նա սարսափով արթնանում է ու ականջները սրում՝ ճյուղը հո չի՞ կարող ինքնիրեն շարժվել:

Նապաստակը սարսափի մեջ է, իսկ նրա աչքի առաջ ահա շարժվում է երկրորդ, երրորդ ճյուղը և ձյունից ազատված վեր թռչում:

Նապաստակը ցատկեց, վազեց, նորից նստեց ու ականջները սրեց. որտեղի՞ց է վտանգը, ո՞ւր փախչի:

Եվ նոր էր նստել հետևի թաթերի վրա, նոր էր շուրջը նայել, երբ նրա հենց քթի առաջից վեր թռավ, ուղղվեց, սկսեց տարուբերվել մի ամբողջ կեչի, կողքին ճոճվեցին եղևնու ճյուղերը:

Ու այդպես անընդհատ. ամենուրեք ճյուղերը վեր են թռչում, ազատվելով ձյան կապանքներից, չորս կողմն ամբողջ անտառը շարժվում կենդանանում է:

Դես ու դեն է նետվում խելքը թռցրած նապաստակը, արթնանում են բոլոր կենդանիները, թռչունները հեռանում են անտառից:




Այսօր առավոտից մեզ մոտ սկսեցին հյուրեր հավաքվել: Առաջինը վազեց ջրածիտը, հենց այնպես, մեզ տեսնելու համար: Մեզ հյուր եկավ կռունկը և իջավ գետակի այն ափին, դեղին ճահճում, ճիմերի մեջ ու սկսեց ման գալ:

Թռավ-եկավ ձկան գիշատիչը նույնպես կեռ քթով, սրատես, բաց-դեղին աչքերով ջրարծիվը ու վերևից սկսեց իր համար որս փնտրել: Դրա համար նա կանգ էր առնում օդում ու թևերով թափահարում: Եկավ պոչի կլոր կտրվածքով ուրուրը և բարձր ճախրեց:

Եկավ ճահճային մկնաբազեն՝ թռչունի ձվերի մեծ սիրահարը: Այդ ժամանակ բոլոր ջրածտերը ընկան նրա ետևից ինչպես մոծակներ: Շուտով ջրածտերին միացան ագռավներն ու բազմաթիվ այլ թռչուններ, որոնք պահպանում էին իրենց բները, ուր ձագերն էին գտնվում: Հսկայական գիշատիչը խղճալի տեսք ուներ, այնպես վիթխարի էր, բայց գլխապատառ փախչում էր փոքր թըռչուններից:

Եղևնուտում անդադար կկուն էր կանչում:

Ջկնկուլը դուրս թռավ չոր, հին եղեգների միջից:

Ճահճային դրախտապանը ճռվողում ու ճոճվում էր մի բարակ եղեգնի վրա:

Սրնչակը ծվծվում էր հին սաղարթի մեջ:

Եվ երբ ավելի տաքացավ, թխենու տերևները, կանաչ թևերով թռչունների նման, նույնպես, ինչպես հյուրերը, թռան-եկան ու նստեցին մերկ ճյուղերին:

Վաղ ուռենին խավոտեց, նրա մոտ թռավ մեղուն, բոռը դզզաց, առաջին թիթեռը ծածկեց թևերը:

Սագն իր երկար վիզն իջեցնում էր ջրափոսի մեջ,

կտուցով ջուր էր հանում, ցայտեցնում իր վրա, ամեն մի փետուրի տակ քորքրում էր, ցնցում շարժուն պոչը, կարծես տակը զսպանակ լիներ դրած: Իսկ երբ ամեն ինչ լվաց, ամեն ինչ մաքրեց, արևի կողմը պարզեց իր արծաթագույն, թացությունից փայլատակող կտուցը և կռավեց:

Իժը, օղաձև փաթաթված, չորանում էր քարի վրա:

Բրդոտ աղվեսը մտահոգ վազեց եղեգնուտով:

Ու երբ մենք հանեցինք մեր խոհանոցի վրանը, նրա տեղը հավաքվեցին դրախտապանները ու սկսեցին ինչ-որ կտցահարել: Դրանք այսօրվա մեր վերջին հյուրերն էին:



Գետի այն կողմում, հարավային ափին գետինը հազիվ նկատելիորեն կանաչել էր, և այդ կանաչը նույնիսկ մի փոքր արտացոլվում էր կապուտակ ջրերի մեջ:

Հողից բարձրացող գոլորշին օդը լցնում էր առողջ մշուշով, և դրանից գետի այն կողմում կանաչ փշատերև անտառը երկնագույն էր դարձել...

Տրակտորը աշխատեց, և ես նրան հեշտությամբ գտա հողի աղոտ-դեղնավուն շերտերի մեջ: Սերմնագռավները հավաքվել էին տրակտորի մոտ, ճիշտ այնպես, ինչպես նախկինում հավաքվում էին արորի շուրջը: Միայն թե առաջ նրանք չէին շտապում և փքված օրորվելով, քայլում էին արորի հետևից: Ինձ նույնիսկ թվում է, որ նախկինում նրանք մինչև անգամ մի քիչ ներողամիտ էին հողագործի նկատմամբ: Հիմա տրակտորն արագ է գնում, և նրա տակից ավելի շատ որդեր են դուրս գալիս, քան արորի տակից էին դուրս գալիս: Սերմնագռավները պետք է շա՜տ, շատ շտապեն, որպեսզի որդերը չթաքնվեն: Նրանք տրակտորի հետևից ոչ թե քայլում են, այլ թռչկոտելով են գնում:

Սերմնագռավները կորցրել են իրենց ծանրակշռությունը, այնինչ հողագործն այժմ քարշ չի գալիս ակոսի միջով, ամեն րոպե չի հայհոյում ձիերին, այլ նստած է և, երևի, նույնիսկ երգում էլ է:

Թարգմ. Վ. ԵՐԿԱՆՅԱՆ

# Հարցրու — ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ

*Հարգելի խմբագրություն.*

*Ես գիտեմ, որ գորտը երկկենցաղ է. ցամաքում օդ է կլանում թոքերի միջոցով, իսկ ջրում՝ մաշկի միջոցով: Ջրի միջից կլանած օդը ի՞նչ ճանապարհով է անցնում թոքերը: Խնդրում եմ գրեք այդ մասին:*

Է. Եզանյան (Արթիկի № 1 դպրոցի աշակերտ)

Սիրելի Էդվարդ.

Երկկենցաղ կոչվում են այն կենդանիները, որոնց զարգացումը սկիզբ է առնում բացառապես ջրում, և թրթուրները ձկների պես շնչում են խռիկներով, իսկ կերպարանափոխվելուց հետո՝ թոքերով և ապրում են թե՛ ջրում և թե՛ ցամաքում: Գորտը ոչ թե ջրում մաշկի միջոցով է շնչում, իսկ ցամաքում թոքերով, այլ շնչում է և՛ թոքերի, և՛ մաշկի, և՛ բերանի լորձաթաղանթի միջոցով, անկախ նրանից, թե որտեղ է գտնվում՝ ջրո՞ւմ, թե ցամաքում:

Դու ուզում ես իմանալ, թե ջրի միջից կլանած օդը ի՞նչ ճանապարհով է մտնում թոքերը, կարծելով, թե գորտը ջրում միայն մաշկով է շնչում: Երևի ինքդ շատ անգամ նկատած կլինես, թե ինչպես գետի, կամ ճահճաջրի մակերեսից հանկարծ դուրս է ցցվում մի փոքրիկ դունչ. դա գորտն է իր քթանցքները հանել դուրս՝ մթնոլորտային օդ շնչելու: Դա նշանակում է, որ ջրից ստացած թթվածինը չի կարող նրան բավարարել: Գազափոխանակության մեջ օժանդակ դեր է խաղում մաշկային շնչառությունը, որը կատարվում է ենթամաշկային գեղձերի միջոցով: Մաշկի միջոցով կլանած օդը ոչ թե մտնում է թոքերը, այլ ենթամաշկի վրայի արյունատար անոթներով տարածվում հյուսվածքների մեջ: Եթե գորտի թոքերը հեռացնենք, նա մի քանի օր կարող է ապրել, իսկ եթե միաժամանակ խանգարենք նաև մաշկային շնչառությունը, երկու ժամից ավելի չի կարող ապրել:

Ֆ. ԱՂԱՍԱՐՅԱՆ




## ԼՐԱՑՐՈՒ ԹՎԵՐԻ ՇԱՐՔԵՐԸ

Որոշիր յուրաքանչյուր շարքի թվերի տեղադրման կարգը և դրան համապատասխան գրիր ևս երկու թիվ։ Եթե կարողացար բոլոր թվերը գրել 3 րոպեում, ապա կարող ես հավատացած լինել, որ դու մաթեմատիկական օրինաչափությունները արագ ես ըմբռնում։

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 2 | 3 | 4 | 5 | 6 | 7 | 8 | 9 |
| 10 | 9 | 8 | 7 | 6 | 5 | ... | ... |
| 5 | 10 | 15 | 20 | 25 | 30 | ... | ... |
| 6 | 9 | 12 | 15 | 18 | 21 | ... | ... |
| 8 | 8 | 6 | 6 | 4 | 4 | ... | ... |
| 3 | 7 | 11 | 15 | 19 | 23 | ... | ... |
| 9 | 1 | 7 | 1 | 5 | 1 | ... | ... |
| 4 | 5 | 8 | 9 | 12 | 13 | ... | ... |
| 25 | 25 | 21 | 21 | 17 | 17 | ... | ... |
| 1 | 2 | 4 | 8 | 16 | 32 | ... | ... |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 21 | 18 | 16 | 13 | 11 | 8 | ... | ... |
| 12 | 14 | 13 | 15 | 14 | 16 | ... | ... |
| 16 | 12 | 15 | 11 | 14 | 10 | ... | ... |
| 25 | 24 | 22 | 21 | 19 | 18 | ... | ... |
| 16 | 8 | 4 | 2 | 1 | ½ | ... | ... |
| 3 | 4 | 6 | 9 | 13 | 18 | ... | ... |
| 1 | 4 | 9 | 16 | 25 | 36 | ... | ... |
| 15 | 16 | 14 | 17 | 13 | 18 | ... | ... |
| 21 | 18 | 16 | 15 | 12 | 10 | ... | ... |
| 4 | 8 | 10 | 20 | 22 | 44 | ... | ... |

## ԵՐԵՔ ՃԱՆԱՊԱՐՀ




Գյուղի ծայրին երեք տուն կա։ Աջ կողմի տանը ապրում է կոլտնտեսության ակումբավար Հակոբը։ Նա ամեն օր հեծանիվով տնից գնում է փոստ և անցնում է ջրաղացի մոտի խճուղով։ Հակոբի հարևան Թաթոս պապը առավոտները վերցնում է կարթերը և, մոտենալով իր տան կողքից հոսող գետին, նավակ է նստում ու իջնում իր սիրած ուռենու մոտ։

Թաթոս պապի հարևանը՝ մեքենատրակտորային կայանի խառատ Գագիկը, աշխատանքի է գնում մարգագետնով անցնող արահետով։

Բայց այդ երեք հարևանների ճանապարհները իրար հետ չեն հատվում։

Նկարի վրա աշխատեք գտնել գետը, խճուղին և արահետը։

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ՍԽԱԼ

Ուսուցիչն աշակերտին մի թիվ տվեց, որը նա պետք է բաժաներ 4-ի, իսկ քանորդին՝ գումարեր 15։

Դրա փոխարեն աշակերտը իրեն տրված թիվը բազմապատկեց 4-ով և արտադրյալից հանեց 15։ Չնայած դրան, նա ստացավ պահանջվող պատասխանը։ Ի՞նչ թիվ էր տվել ուսուցիչը։

$\boxed{?} \cdot 4 - 15 = \quad \boxed{?} : 4 + 15 =$



## ՀԻՆԳ ՔԱՌԱԿՈՒՍԻ

Լուցկու ինը հատերի օգնությամբ կառուցեք հինգ քառակուսի։



## ԵՐԵՔ ԱՆԱՊԱՏ





*Բաց թողած վանդակները լրացրեք տառերով և կարդացեք աշխարհի երեք խոշոր անապատների անունները։*




## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

*«Պիոներ» № 2.*

*«Լավ մտածիր, հետո ասա»— 20 եռանկյունի։*

*«Արագ պատասխանիր». — 15 անգամ։*

*«Որտեղ».— Հյուսիսային բևեռի կենտրոնում։*

*«Ով ինչպես է բաժանում».—*

18 = 18 = 1

*«Ստացիր սուր անկյուններ.—*



**Խմբագրական կոլեգիա**

ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲՈՒԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Ս. (խմբագիր), ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս. (գեղարվեստական խմբագիր), ՕՀԱՆՅԱՆ Ա.։

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Красноармейская № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06*

*ՎՖ 01970, Պատվեր 163, Տիրաժ 5000։ Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 13/III 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

*Գինը 2 ռ.*




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝ Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

# Ֆոկուսի գաղտնիքները

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆ
(Հայկ. ՍՍՌ վաստ. արտիստ)

Իսկ այժմ դուք, ինչպես ասում են, ֆոկուսի հակառակ կողմում եք:

Ուշադիր նայեք:

Գավաթով ֆոկուսի համար ինքներդ էլ կարող եք պլեկսիգլասից գավաթ պատրաստել, որ կպցնել հարկավոր է ացետոնով, իսկ ծուել՝ տաքացված վիճակում: Ինչպես ցույց է տրված նկարում, պետք է պատրաստել շտուցեր, որի վրա հագցվում է ռետինե տանձիկ: Աննկատելիորեն սեղմելով ու բաց թողնելով տանձիկը, կարելի է լցնել և դատարկել գավաթը:

Ձախ ձեռքումս սպիտակ թաշկինակն է, աջումս՝ կապույտ: Դրանք ես դնում եմ իրար վրա (Նկ. 1) և կապում (Նկ. 2 և 3): Այժմ, ձևացնելով, թե հանգույցն ավելի եմ ամրացնում, ես ձգում եմ միայն կապույտ թաշկինակի ծայրից ու կենտրոնից: Հանգույցը կապույտ թաշկինակի վրա վեր է ածվում սահող օղակի (Նկ. 4): Դրանից հետո կապույտ թաշկինակը ձախ ձեռիս վրա եմ գցում և մատներով արագորեն քաշում եմ հանգույցը (Նկ. 5): Ահա և բոլորը:

Այս ֆոկուսի համար ամենից հարմար է վերցնել նուրբ մետաքսե թաշկինակներ:

Ահա կտրվող թոկով ֆոկուսը:

Նայեցեք: Ես թոկը ծալել եմ (Նկ. 1): Հետո, երբ ես երկրորդ անգամ եմ ծալում, ձախ ձեռքումս եղած ծայրերից մեկը բռնում եմ օղակի միջով (Նկ. 2): Առաջանում է նոր օղակ, որը և ես ցույց եմ տալիս ձեզ: Իսկ դուք, կարծելով, որ դա թոկի կենտրոնն է, կտրում եք այն (Նկ. 3): Բաց թողնելով թոկի ծայրերը ես ձեզ ավելի եմ համոզում, որ այն իբր երկու կես է արված (Նկ. 4): Եվ դուք այդ ժամանակ անվնաս մնացած թոկի վրա կապում եք միայն նրանից կտրված փոքրիկ թելի ծայրերը (Նկ 5): Իսկ ես ձեռքս սահեցնելով թոկի երկայնքով, հանգիստ հանում եմ հանգույցը:

Աննկատ դրամի ֆոկուսը նույնպես շատ պարզ բացատրություն ունի: Մետաքսե այն թաշկինակի անկյունում, որը ես ձեզ տվեցի բռնելու, նախապես կարված էր ամուր ծալված մի թուղթ, որը համապատասխանում էր ծալված քսահինգ ռուբլիանոցի չափին: Ձեռքս թաշկինակով ծածկելով, ես աննկատելիորեն ափիս մեջ թաքցրի իսկական դրամը, իսկ ձեզ բռնելու տվեցի կարած թուղթը: Այնուհետև, երբ դուք զննում էիք իմ դանակը, ես ուղղակի գրպանիս մեջ դրամը զգուշորեն մտցրի կարտոֆիլի մեջ նախօրոք բացված անցքը: (Կարտոֆիլը ձեզ ցույց տալու ժամանակ ես մատով անցքը ծածկել էի): Այս բոլորից հետո ամեն ինչ շատ պարզ է. ձեզնից վերցնում եմ թաշկինակը, հետո զգուշորեն կտրում եմ կարտոֆիլը և նրա կեսը այնպես եմ բռնում, որ դուք նրա վրայի անցքը չնկատեք: Ահա և ամբողջ ֆոկուսը:

Ժամացույցով ֆոկուսն արդեն որոշ սարքավորումներ է պահանջում: Դրանք սովորական բաժակից մի փոքր լայն, մետաղյա երեք անոթներ են: Դրանցից երկուսը դուք տեսաք՝ կափարիչը և անոթը: Իսկ երրորդը ներդիր անոթն է, որը դրվում և հանվում է կափարիչի վրա եղած զսպանակների օգնությամբ: Նախքան ֆոկուսը ցուցադրելը ես ջարդված ժամացույցը դրել էի անոթի մեջ և վրայից ծածկել էի ներդիրով: իսկ ձեր ժամացույցը դրեցի ներդիրի մեջ (Նկ. 1): Երբ ես անոթը ծածկեցի կափարիչով, միաժամանակ ներդիրի ծայրերը բռնեցի կափարիչի զսպանակներով: Կափարիչի հետ միասին հանեցի և ներդիրը: Այժմ ես կարող էի շատ հանգիստ ծեծել ջարդված ժամացույցը (Նկ. 2): Մինչ դուք վրդովվում էիք, ես (ավելի հարմար է օգնականը) կափարիչի միջից աննկատելիորեն հանեցի ներդիրը, այնտեղից վերցրի անվնաս ժամացույցը և այն դրեցի անոթի մեջ, վերևից ծածկելով արդեն դատարկ ներդիրով (Նկ. 3): Դուք տեսաք, թե ինչպես ես ջարդված մեխանիզմը լցրեցի այդ ներդիրի մեջ, ծածկեցի կափարիչով և կրկին վերցրի, բայց այժմ արդեն ներդիրի հետ միասին (Նկ. 4):

Աննկատ բաժակի ֆոկուսը ավելի պարզ է, բայց դրա համար պահանջվում է հատուկ սեղան: Սեղանի երեսին անցք է արված, որի մեջ իջեցված է սփռոցի տակից կարված բաժակի մեծության մի տոպրակ: Որպեսզի տոպրակը չնկատվի, տոպրակը պատրաստվում է սփռոցի կտորից: Անցքի կողքին դնելով բաժակը, դուք այն ծածկում եք թաշկինակով, որի կենտրոնում կարված է բաժակի տրամագծի չափով մի օղակ: Այնուհետև բարձրացնելով բաժակը, մի փոքր թուլացնում եք մատները և թողնում, որ բաժակն ընկնի տոպրակի մեջ: Այժմ դուք բարձրացնում եք միայն օղակը, ձևացնելով, որ դա բաժակն է: Հանկարծակի թափահարելով թաշկինակը, ցույց եք տալիս, որ բաժակը չկա:

Բոլոր ֆոկուսները հետաքրքիր ու ազդեցիկ են միայն այն դեպքում, երբ նրանք խնամքով ու շատ անգամ փորձվել են: Հիշեցեք՝ դրանում է հաջողության երաշխիքը:





















